1916 № 45.—Նոյեմբերի 6

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.: Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտատարդեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.
Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից:
Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



### ԿՈՎԿԱՍԻ ՑԱՒԵՐԻՑ

Երկրորդ դարն է գլորւում այն օրից, երբ Կովկասը, ազատուելով արևելեան բռնակալ պետութիւններից և նրանց առասպելական բարբարոսութիւններից, մտաւ Ռուսաստանի հովանու տակ և իւր վիճակն ու ապագան կապեց նրա հետ:

Չի կարելի չխոստովանուել, որ այս երկար ժամանակամիջոցում, երբ բազմաթիւ սերունդներ են եկել ու անցել, Կովկասը համեմատելով իւր խաւար անցեալի հետ, քայլ առ քայլ կերպարանափոխուել է, առաջ ընթանալով քաղաքակրթութեան ճանապարհով:

Երկրի մասերը, նոյնիսկ լեռնաշղթաներով բաժանուած, կապուել են միմեանց և Ռուսաստանի ու Եւրոպայի հետ խճուղիներով, երկաթուղիներով և ծովային հաղորդակցութեամբ, բացուել են լուսաւորութեան տաճարներ՝ սկսած գիւղական համեստ դպրոցից մինչև բարձրագոյն կրթական և գիտական հիմնարկութիւններ. երկրի զանազան, երբեմն ամենախուլ անկիւններում շռնչոցներն և սուլոցները վկայում են, որ մեզանում ևս զարգանում է գործարանական և հանքային կեանքը. ճարտարարուեստը (промышленность), արտադրութիւնը ու առևտուրը ծաղկում են ու տարածւում. մեր ժողովուրդի ստուար մասի համար բնական պահանջ է դարձել լրագիրը, գիրքը և ահա՝ բազմաթիւ վայրերում հրատարակւում են լրագրեր, գրքեր, հիմնւում են գրադարաններ և զանազան կրթական և կուլտուրական հաստատութիւններ:

Մի խօսքով, կատարուած առաջադիմութիւնը անկասկած մեզ մօտեցրել է եւրոպական քաղաքակիրթ ժողովուրդներին. բայց միաժամանակ ցաւօք սրտի պէտք է խոստովանուել, որ դեռ շատ և խոշոր թերութիւններ ունենք, որպէս զի իրաւունք ունենայինք Կովկասի ազգաբնակութիւնը en masse քաղաքակիրթ համարելու:

Մեր երկիրը մինչև օրս պէտք է աւելի առաջ գնացած լինէր, մենք պէտք է աւելի մեծ բարիքների հասած լինէինք, եթէ չլինէին զանազան խոչընդոտներ, երբեմն հենց իրեն Կովկասի ժողովուրդի միջից ծագող խոչընդոտներ՝ որոնք ոչ թէ միայն թուլացնում են առաջադիմութեան գործը, այլ յետ են մղում և երբեմն կործանում առաջադիմութեան արդիւնքը:

Մեր կուլտուրական աշխատանքի կործանողը, թշնամին այլ ևս հինաւուրց հարևան պետութիւնները չեն, այլ

*հենց Կովկասի ժողովուրդից ծնած այն վայրենի տարրերը, որոնք մնացել են հեռու քաղաքակրթութիւնից, մնացել են թաղուած տգիտութեան մէջ, մնացել են անբաժան իրենց ժառանգական սոտր և վատ հակումներից ու ձգտումներից. Նրանց գիտակցութեանը դեռ մատչելի չէ յարգանք դէպի ուրիշի անձը, պատիւը, կեանքը և սեփականութիւնը. ընդհակառակը ուրիշի ունեցածը յափշտակելը, ամեն տեսակ բռնութիւն և սպանութիւն նրանց հասկացողութեամբ հերոսութիւն է։*

*Ընդհանուրի խաղաղ և կուլտուրական կեանքը խանգարող տարրերը՝ Կովկասի աւազակներն են և նրանցից կազմակերպուած խմբերը։*

*Աւազակութիւնը, ճիշտ է, եղել է բոլոր երկրներում և բոլոր ազգերի մէջ, բայց այդ երևոյթը միշտ յատկանիշ է եղել այն ժամանակներին, երբ ժողովուրդը գտնուելիս է եղել տգիտութեան և խաւարի մէջ, երբ դեռ չի եղել հաստատուն և ուժեղ քաղաքացիական և քաղաքական կարգ։*

*Ռուսաստանում աւազակութիւնը եղել է շատ հին ժամանակներում, բայց ուժեղ կերպով արտայայտուել է Մոսկուայի պետութեան մէջ թաթարների արշաւանքից յետոյ, մանաւանդ Վոլգայի շրջանում։ Աւազակների քաջագործութիւնը ծառայել է նիւթ ժողովրդական բանաստեղծութեան, որ արտայայտուել է ժողովրդական երգերում, և այդ երգերի մի մասը յիշւում է մինչև օրս։*

*Յունաստանում աւազակութիւնն այնքան զարգացած էր, որ հին ժամանակները քաղաքները շինւում էին ծովի ափից հեռու, որպէսզի աւազակների յարձակումներից ազատ մնան։*

*Սակայն այդ բոլորը ուրիշ երկրներում դարեր առաջ վերջացել է և ծածկուել հնութեան փոշիով շնորհիւ լուսաւորութեան և քաղաքակրթութեան, շնորհիւ զօրեղ քաղաքացիական և պետական կարգի։*

*Իսկ Կովկասում այդ չարիքը շարունակւում է, չընայած այն բոլոր միջոցներին, որ մինչև այժմ ձեռք են առնուած կառավարութեան կողմից, չը նայած զանազան ժամանակներում հրատարակուած և գործադրուող յատուկ և խիստ օրէնքների աւազակութեան դէմ, ինչպէս, օրին. 13 սեպտեմբերի 1893 և յետագայ տարիների օրէնքները, որով աւազակները դատւում են զինուորական դատարանով և ենթարկւում մահուան պատժի։*

*Չարիքը մնում է անընդհատ։*

*Եւ այս տեսակ անբնականոն (աննորմալ) պայմաններում տուժում է, ի հարկէ, ամբողջ ազգաբնակութեան կուլտուրական և արդիւնաբերական կեանքը, մանաւանդ գիւղատնտեսութիւնը։ Ոչ ոք չի վստահում լուրջ կերպով գիւղատնտեսութեամբ պարապելու, ոչ ոք չի վստահում դրամագլուխ դնելու գիւղատնտեսութեան զանազան ճիւղերը զարգացնելու, որովհետև գաւառում չկայ ապահովութիւն կեանքի և գոյքի. իսկ խեղճ ու կրակ գիւղացին ահ ու դողով սարսափած շարունակում է իր հողը մշակել, բայց յաճախ ենթարկւում է աւազակների թալանին և զրկւում իր արիւն-քրտինքով վաստակած բերքի արդիւնքից, երբեմն նոյնիսկ նրա կեանքն էլ ենթարկւում է վտանգի։ Ոչ պակաս դէպքեր են լինում, որ աւազակները քշում, տանում են գիւղացու ամբողջ տաւարը, ոչխարները, ձիերը հարևան գաւառը կամ նահանգը և այնտեղ ծախում են ու հետքերը իսպառ կորցնում։*

*Այս դրութիւնը բացառիկ չէ։*

*Կովկասի համարեա բոլոր նահանգները, իսկ Անդրկովկասի խիտ մահմեդական ազգաբնակչութեամբ նահանգները ներկայումս կատարելապէս տանջւում են աւազակների ձեռքից։*

*Օր չի անցնում, որ լրագրերը չը հաղորդեն զանազան տեղերում կատարուած զազրելի աւազակութիւնների մասին։*

*Այդ կողմից աւելի ցաւալի դրութեան մէջ են Շուշուայ, Գանձակի, Ղազախի, Նոր-Բայազէդի և այլ գաւառները։*

*Աւազակները օրը ցերեկով կողոպտում են գիւղեր, կտրում են մեծ ճանապարհներ և կողոպտում տասնեակ, հարիւրաւոր ճանապարհորդներ։*

*Այս խեղդող մթնոլորտին, այս դժոխային կացութեան պէտք է վերջ տալ. պէտքէ խոստովանուել, որ յատուկ օրէնքների հրատարակութիւնը, կամ երբեմն խիստ պատիժը բաւական միջոց չէ։ Փորձը ցոյց է տալիս, որ միմիայն այդ միջոցները ինքնըստինքեան դրական հետևանքներ չեն տալիս։*

*Այս ծանր խնդիրը լուծելու համար հարկաւոր է տեսական դատողութիւններից անցնել մեր իրականութեան ու մեր ժողովուրդի իմաստալի դիտողութիւններին։*

*Այդտեղ պէտք է փնտռել չարիքի դէմ կռուելու գործնական միջոցները։*

*Անվիճելի է, որ աւազակութիւնը զարգանում է տգիտութեան հողի վրայ, հետևապէս հարկաւոր է մեծ թափով տարածել լուսաւորութիւն այն ժողովուրդի մէջ, որից գլխաւորապէս ծագում են աւազակներ. պէտք է նրա մէջ միաժամանակ տարածել արհեստներ, զարգացնել գիւղատնտեսութիւն և առևտուր։*

*Լուսաւորութիւնն ու այդ պարապմունքները ժամանակի ընթացքում արմատախիլ կանեն աւազակութիւնը։*

*Իսկ մինչև որ այդ հեռու և լաւ օրերը կըգան, չի կարելի խաղաղ և աշխատասէր ժողովուրդին թողնել ահաբեկուած։*

*Կան և այնպիսի գործնական միջոցներ, որոնց կարելի է դիմել անմիջապէս աւազակներին զսպելու համար։ Աւազակը յանդուգն է և համարձակ է կատարում իր յարձակումները, որովհետև նախ՝ գիտէ որ իր զոհը անզէն է և չի կարող դիմադրել և երկրորդ՝ որ իր փախուստի դէպքում ունի որոշ ապաստարաններ, ուր կարող են նրան թագցնել և պահպանել։ Աւազակութեան դէմ մղուող կռիւը պէտք է չէզոքացնի աւազակների այդ երկու բարեպատեհ հանգամանքները։*

*Հարկաւոր է, որ ամեն մի գիւղական համայնքի*

տրուի որոշ քանակութեամբ զէնք, որպէսզի համայնքը իր միջից կազմակերպի ինքնապաշտպանութիւն աւազակների դէմ։

Հարկաւոր է, որ այն գիւղերը, որտեղ աւազակները պատսպարւում են, ենթարկուեն համերաշխ պատասխանատուութեան. պէտք է պահանջել նրանցից աւազակների հասցրած վնասները։

Անուշադիր չի կարելի թողնել և մէկ խնդիր, այն է՝ ոստիկանութեան ներկայ կազմը։ Այդ կազմը կարօտ է արմատական փոփոխութեան. նրա միջից պէտք է հեռացուեն այն տարրերը, որոնք իրենց անձնաւորութեամբ և անցեալով չեն վայելում խաղաղ ժողովրդի վստահութիւնը։

Եթէ անմիջապէս սկսուի այս միջոցների գործադրութիւնը, այն ժամանակ յատուկ օրէնքները իսկապէս իրենց նպատակին կը հասնեն, կործանիչ աւազակութիւնը շատ շուտ կը զսպուի, ժողովուրդն էլ ազատ շունչ կը քաշի և իր խաղաղ աշխատանքին կը դիմի։

Առանց յետաձգելու պէտք է դիմել այդ միջոցներին, եթէ չենք կամենում Կովկասի հին ցաւը թողնել անբուժելի։

Այս է թելադրում մեզ կեանքի փորձառութիւնը։

Այս է պահանջում իրերի ծանր դրութիւնը։

Ս. Յ.

# Համաշխարհային պատերազմը

*Արեւմտեան ճակատ.*—Կռիւները շարունակւում են գլխաւորապէս և անընդհատ Սկրորովի, Լիպիցաօրոլնայի, Աւստելնիկի, Դորնա-Վատրայի և անտառապատ Կարպատների շրջաններում։ Թշնամու կատաղի գրոհները յետ են մղուած. նրա գրաւած խրամատների մեծ մասը յետ են խլուած և առհասարակ մեր զօրքերի դրութիւնը վերահաստատուել է։

*Ֆրանսական ճակատ.*—Սոմմի շուրջը կատաղի կռիւ է. գերմանացիք ուժեղ գրոհ են տուել ֆրանսական դիրքերի վրայ, գործածելով բոցավառ հեղուկ. գրոհը յետ է մղուել և գերմանացիք մեծ կորուստներ են ունեցել։ Ֆրանսական զօրքը նոյն շրջանում, Սայեղել գիւղի մօտ, յարձակուել և գրաւել է գիւղի մեծ մասը և գերիներ առել։

*Անգլիական ճակատ.*—Անգլիացիք գրոհով նուաճեցին ամրացուած Բոմոն գիւղը և Բուկուրը, վերցնելով մօտ 5000 գերի. անգլիական զօրքերն առաջացել են մինչև Բարլինկում։

*Ռումանական ճակատ.*— Տրանսիլվանիա, Տիրաուլի, Օլթի և Ժիու գետահովիտներում շարունակւում են թշնամու յամառ գրոհները. սակայն շնորհիւ նոր օգնական զօրքերի հասնելուն Ռումաններին յաջողուել է թշնամուն տեղ-տեղ վանել։

*Կովկասեան ճակատ.*—Թիւրքերը մի շարք փորձեր արին յարձակուելու Սորնիկի կողմից, Գիւմիշխանէից հիւսիս արեւմուտք, Բզուց հարաւ, Շարաֆխանէի և Մուշի ուղղութեամբ։ Փորձերը անյաջող անցան։ Թիւրքերը ստիպուեցին նահանջել։

*Սերբիական ճակատ.*—Սոլունի Ցռնայի վրայ արիւնահեղ կռիւներ են մղւում։ Սերբերի զօրքը խլել է Տեշաւոի և մի քանի ուրիշ ամրացրած գիւղեր և հազարից աւելի գերի։

Իլլին գիւղի շրջանում կռուի դաշտը ծածկուել է թշնամու դիակներով։

# Պետական կեանք

Նոյեմբերի 1-ին բացուեցին Պետական Խորհուրդը և Պետական Դուման։ Առաջին նիստերը նուիրուած էին պատերազմին և գլխաւորապէս Լեհաստանի խնդրին։ Շատ հետաքրքրական էին Պետական Դումայում արտասանուած ճառերը։ Հարկաւոր ենք համարում բերել քաղուածքներ Դումայի Նախագահի և Լեհական կոլոյի ներկայացուցիչ Գարուսէվիչի ճառերից։

## Ռոձեանկոյի ճառը

Պարոնայք անդամներ Պետական Դումայի. 27 ամիսներ անցան, պատերազմը շարունակ ծաւալւում է նորանոր ժողովուրդների քաշելով դէպի իրեն։ Պատերազմի պահանջները բազմանում են և տիրողաբար իրենց են ենթարկում առօրեայ հոգսերը՝ պահանջելով նորանոր անխուսափելի զոհողութիւններ։ Պատերազմն երկարաձգւում է, ռազմական գործողութիւնները հետզհետէ աւելի են յամառ ու կատաղի դառնում, և աւելի ու աւելի լարուածութիւն ու ճիգեր են պահանջում մեզանից։ Մեր թշնամին հարուած կրեց, բայց նրա ուժերը դեռ չեն սպառուած, չեն ջախջախուած. նա պաշտպանւում է յուսահատ յամառութեամբ, կըռահելով, որ պիտի պարտուի։ Ահա թէ ինչ պայմաններում ենք վերստին ձեռնարկում մեր աշխատանքին՝ երկար, կասեմ, չափազանց երկար ընդմիջումից յետոյ (ծափեր, ձախից ձայներ՝ «կեցցէ», «ճիշտ է»)։ Պետական Դումայի առաջնակարգ պարտքն է հանգարտ ու մանրազննին գնահատել դրութիւնը, անմիջապէս հեռացնել այն ինչ չպիտի լինի, և ինչ խանգարում է երկրին հասնել առաջադրուած միակ նպատակին։ Այդ է պահանջում ժողովրդական պատիւը, ժողովրդական խիղճը. այդ է պահանջում ոչ միայն պետական ապահովութիւնը, այլ և յետագայ սերունդների բարօրութիւնը (ծափեր բոլոր նստարանների վրայ)։ Աստծու օգնութեամբ Ռուսաստանը կը հասնի այդ նպատակին։ Պատերազմն արդէն կեանքի կոչեց ժողովրդի ակամայ անգործ մնացած ուժերը, և այդ ուժերը ցոյց տուին իրենց հզօրութիւնը։ Մենք պիտի յաղթենք, ինչ էլ որ լինի։

## Գարուսէվիչը լեհական կոլոյի անունից կարդում է հետեւեալ յայտարարութիւնը.

«Լեհական թագաւորութեան անկախութեան և Գալիցիայի աւտոնոմիայի (ինքնավարութեան) մասին Գերմանիայի և Աւստրիայի հրատարակած ակտը ստեղծում է նոր միջազգային խնդիրներ։ Արիւնահեղ պատերազմի ամենատաք բոպէին գերմանական պետութիւնները վստահութիւն ունեցան կանխալուծել վիճակը ոչ միայն Լեհաստանի, այլ և ամբողջ միջին արեւելեան Եւրոպայի։ Լեհական հողերից անկախ լեհական պետութիւն ստեղծելը, որ շատ տեսակէտից զրկուած է մեծ պետութիւններից կախուած վիճակում, կը դառնայ գերմանական իմպէրիալիզմի զէնք։

«Լեհ ժողովուրդը չի համաձայնի գերմանական լուծմանը, որ բացարձակապէս ներհակ է պատմական մեծ բոպէի պահանջներին։ Լեհ ժողովուրդը մէկ ու կէս դար շարունակ ապրում էր այն անյողդողդ հաւատով, թէ կը հասնէ պատմական արդարադատութեան ժամը, ազատ միացեալ Լեհաստանի վերածնութեան ժամը։ Այդ հաւատը նրան ոյժ էր տալիս կրելու ամենածանր փորձութիւններ, պահելու իր ոգին և զարգացնելու ազգային կուլտուրան։ Մենք վճռապէս բողոքում ենք գերմանական այդ ակտի դէմ, որ վաւերացնում է Լեհաստանի բաժանումը և ձգտում է արգելք լինել Լեհաստանը միացնելու պատմական անհրաժեշտութեանը, որ անկարելի է առանց Կրակովի, Պոզնանի, Սիլեզիայի և Լեհական ծովի…

«Մենք հաստատ հաւատացած ենք, որ կը ջախջախուի Գերմանիայի հզօրութիւնը, որ Մեծն Ռուսաստանը և նրա քաջարի դաշնակիցները կը տանեն լիակատար յաղթութիւն թշնամու վերայ, որ ի կատարումն արդարութեան և ժողովուրդների իրաւունքների մեծ սկզբունքների՝ կը միացուեն բոլոր լեհական հողերը և կը վերականգնուի ազատ Լեհաստանը»։

# Ներքին տեսութիւն

## ԿՈՎԿԱՍԻ ԱԶԳԱԲՆԱԿՈՒԹԵԱՆ

Թագաւոր Կայսրի կամքով կառավարութիւնը ձեռնարկում է կնքելու նոր պատերազմական փոխառութիւն 3 միլիարդ գումարի։

Արդէն երկու տարուց աւելի է, որ շարունակւում է պատմութեան մէջ անօրինակ կռիւը, որ պահանջում է պետութիւնից ուժերի անագին լարումն։ Այդ կռիւը յաղթութեամբ վերջացնելու համար հարկաւոր են ամենից առաջ նախկին պատերազմներին չլսուած դրամական միջոցներ, որպէս զի իր ժամանակին հայթայթուի մեր բազմամիլիոն զօրքին ամեն ինչ, որ անհրաժեշտ է։

Ընթացիկ ծախքերի համար որոշուած է հարկաւոր միջոցները ներկայումս ստանալ փոխառութեան միջոցով երկրի ներսում, չդիմելով օտարերկրեայ, թէև բարեկամ, պետութիւնների օգնութեան։

Ապագայ փոխառութեան պայմանները շատ նպաստաւոր են մասնակցող անձանց համար, ապահովելով նրանց համար դրամագլխի լաւ եկամուտ, նոյնպէս և հաստատ ու շահաւէտ տեղաւորում խնայած գումարների։ Պետութիւնը՝ փոխ առնելով իր հպատակներից պատերազմը վարելու համար անհրաժեշտ դրամները, պատասխանատու է իր ամբողջ գոյքով այդ դրամները վերադարձնելու համար։ Ակնյայտ է, որ դրամագլխի այդպիսի հաստատ և ապահով տեղաւորմամբ՝ գանձարանից վճարուելի տոկոսը հարիւրին հինգ և կէս ռուբլի՝ շատ բարձր է և պարտատէրերի համար շատ շահաւէտ։

Կովկասում բնակուող ժողովուրդներ։ Ես դիմում եմ ու կոչ եմ անում ձեզ և առաջարկում ձերովսանն ջերմ մասնակցութիւն ցոյց տալ մի գործի, որի աջողութիւնը նշանաւոր չափով կապահովէ մեր պանծալի զօրքերի յաղթութիւնը թշնամիների դէմ։ Մենք պէտք է յաղթենք, և կռիւը պէտք է շարունակուի մինչև յաղթական վախճանը, ինչ էլ որ լինի։ Միայն լիակատար յաղթութիւնը թշնամու դէմ՝ կապահովէ մեր հայրենիքի մեծ ժողովրդին վայել գոյութիւնը և հնարաւորութիւն կը տայ լայն ու անդադրում զարգացնելու իր հոգևոր և նիւթական ուժերը։ Կովկասի դիւցազն զօրքերը այս երկար և անօրինակ պատերազմին, բովանդակ ռուս զօրքի հետ միասին ծածկեցին իրենց անթառամ փառքով։ Բայց թշնամու դէմ կատարեալ յաղթութիւն տանելու համար՝ կռիւը պէտք է լինի ժողովրդական։ Ով անմիջապէս չէ մասնակցում ռազմական սխրագործութեան, զոհելով իր առողջութիւնը և անձը մարտի դաշտում, նա պէտք է այլ ճանապարհով օգնէ ընդհանուր ժողովրդական գործին, նպաստելով ըստ կարի մեր փառապանծ զօրքի բազմապիսի կարիքներին։ Համակուենք ուրեմն այն գիտակցութեամբ, որ պարտականութիւնն առ Ամենաբարձրեալը, Ցարը և Հայրենիքը պարտաւորեցնում է մեզանից իւրաքանչիւրին անել բոլոր հնարաւորը պատերազմի յաղթական լրման համար։

Կովկասի բոլոր ժողովուրդների փորձուած և անխախտ հաւատարմութիւնը առ Ցարը և Հայրենիքը հաստատ համոզմունք է ներշնչում Ինձ, որ ծայրագաւառի համայն ազգաբնակութիւնը ջերմագին արձագանգ կը տայ Իմ կոչին, յօժարակամ ներմուծելով իր վաստակած խնայողութիւնները և ազատ կարողութիւնը պատերազմական նոր փոխառութեան մէջ։

Յայտնում եմ ի գիտութիւն ամենքի, որ փոխառութեան ստորագրութիւնը սկսուելու է նոյեմբերի 1-ից պետական բանկի հիմնարկութիւններում, գանձարաններում, առևտրական մասնաւոր բանկերում, քաղաքային հասարակական բանկերում, փոխադարձ վարկի ընկերութիւններում, պետական խնայողական դրամարկղներում (կասսաներում), մանր վարկի հիմնարկութիւններում և դաշտային գանձարաններում։

Կովկասի Փոխարքայ, Կովկ. բանակի Գլխաւոր Հրամանատար գեներալ-ադիւտանտ ՆԻԿՈԼԱՅ

Թիֆլիս, 25 հոկտեմբերի

---

## ԾՐԱԳԻՐ ՀԱՅՈՑ ԹԵՄԱԿԱՆ ՀՈԳԵՒՈՐ ԴՊՐՈՑՆԵՐԻ ԱՌԱՐԿԱՆԵՐԻ։ Ս. ԷՋՄԻԱԾԻՆ, 1916. 154 ԵՐԵՍ ՄԵԾ 8°.

Երեք տարի շարունակ Էջմիածնի դիւանատներում, յանձնաժողովներում և մասնաժողովներում քաշ ընկաւ այս ծրագիրը, որ վերջապէս մարտի 26-ին Ամենայն Հայոց Կաթողիկոսը հաստատելով՝ տպագրուած յանձնել է ի գործադրութիւն։ Ուրեմն մօտենում է այն ժամանակը, երբ մեր Թեմական դպրոցներում և Ճեմարանի դասարանական բաժնում միակերպութիւն կը մտնի, և աշակերտները մի դպրոցից միւսն անցնելիս կամ լսարանները մտնելիս ազատ կը լինին ձանձրալի և բաղդախաղ քննութիւններից։ Այս հանգամանքը ինքնին ողջունելի է։

Այսու Թեմական դպրոցներն ունեն եօթը հիմնական դասարան, ուր դասաւանդման առարկաներն են. կրօնական՝ սրբազան պատմութիւն Նոր Ուխտի, քրիստոնէութեան քարոզութիւնը Ա. տարում և Կաթուղիկէ եկեղեցու հաստատութիւնը, կարգ աստուածպաշտութեան, ուսումն Ս. Գրոց Հին և Նոր Կտակարանի և Առաքելոց Թղթերի, դաւանաբանութիւն հայոց եկեղեցու և քրիստոնէական բարոյագիտութիւն, կրօնների պատմութիւն և հայոց եկեղեցու պատմութիւն. լեզուներ՝ հայերէն՝ գրաբար և աշխարհաբար, ռուսերէն և գերմաներէն. մաթէմատիկա՝ թուաբանութիւն, հանրահաշիւ և երկրաչափութիւն. պատմութիւն հայոց, ռուսաց և ընդհանուր, աշխարհագրութիւն Հայաստանի, Ռուսաստանի և ընդհանուր. բնագիտական՝ կենդանաբանութիւն, բուսաբանութիւն, ֆիզիկա, քիմիա, մարդակազմութիւն, բնախօսութիւն և առողջապահութիւն. հոգեբանութիւն և մանկավարժութիւն. ապա երաժշտութիւն, նկարչութիւն և մարմնամարզութիւն։

Ծրագիրը կազմել են Թեմական դպրոցների և Ճեմարանի ուսուցիչները։ Անշուշտ ժամանակը և փորձը միայն ցոյց կըտան, թէ որքան համապատասխան և համաչափ է կազմած. բայց և այնպէս որոշ դիտողութիւններ այժմ իսկ հնարաւոր են։

Ա. և Բ. դասարաններում հայերէնը միայն աշխարհաբար է, իսկ Գ. դասարանից զուգընթացաբար գնում են մի կողմից գրաբար լեզու և հին գրականութիւն, միւս կողմից աշխարհաբար լեզու և նոր գրականութիւն։ Բանահիւսութեան տեսութիւն, իբրև առանձին առարկայ, չըկայ, բայց ընդհանուր լեզուական դասերի ծրագրում դրել են այնպիսի կէտեր, որոնք փոխարինելու են նրան։ Այսպէս Գ. դասարանի ծրագրում կայ, ի միջի այլոց, հետևեալը. «Վիպական գրուածներ, առակներ, պատմական քերթուածներ, բալլադներ.... և ծանօթութիւններ բանաստեղծական տեսակների և ձևերի մասին, որքան պէտք է գրուածքը հասկանալու համար։ Ծանօթութիւն պատկերաւոր և արձակ ոճի և ոճական ձևերի մասին....»։ Իսկ Ե.-ի ծրագրում «Տեսարաններ թատերական երկերից (ողբերգական, կատակերգական, դրամա-

Լաւ էին թէ վատ կառավարելու իմ այդ եղանակները—ի հարկէ ինքս չպիտի լինեմ դատաւորը, բայց այժմ ես անձնապէս, կատարեալ գիտակցութեամբ, պարտաւորուած եմ համարում վկայել, որ Կովկասի բնակչութիւնը, որը վերադարձել է խաղաղ կեանքի, նոյնպիսի հաւատարիմ հպատակներ են, ինչպէս և Ռուսաստանի կենտրոնում, և պատրաստ իրենց կեանքը զոհելու նրա բարօրութեան համար։ Ռոմանովների Տան երեք հարիւրամեայ յոբելեանական տօնախմբութիւնն անցաւ Կովկասի նոյն իսկ ամենախուլ անկիւններում հայրենասիրական զգացումների այնպիսի անկեղծ ոգևորութեամբ, որ տարակոյս չի կարող լինել, որ Կովկասի բնակչութիւնը անսահման երախտապէտ է Ռուսաստանի Թագակիր Պետերին՝ Կովկասը Ռուսիոյ պետութեան հովանու տակ առնելու համար։ Ընդ սմին չեմ կարող չմատնանշել ժողովրդական հպարտութեան զգացմամբ, որ այժմ Կովկասի ազգաբնակութիւնը ռուս իշխանութեանը առաջուայ վստահութեամբ է վերաբերւում, որը, դժբաղդաբար, իմ Փոխարքայ նշանակուելու միջոցին չքացել էր, որ և ամբողջ Կովկասում խռովութեան բռնկման գլխաւոր պատճառը դարձաւ։

Արդէն 1910 թուին ես վկայել եմ, որ Կովկասը գտնւում է հաստատուն խաղաղացման նախօրեակին։ Այժմ, երբ երկիրը բոլորովին խաղաղել է և ամենամօտիկ ապագայում պէտք է միայն ուշադրութեամբ հետևել տեղական բնակչութեան կեանքի երևոյթներին և իւր ժամանակին կարգաւորել ցանկալի ուղղութիւն տալ։ Եթէ լարուած ուշադրութիւն դարձնենք տեղական պէտքերին ու կարիքներին, նոյնպէս եթէ ըստ կարելոյն անյապաղ ապահովենք ու նրանց գոհացնենք, այն ժամանակ կասկած չի կարող լինել, որ երկրի բարգաւաճումը ապագայում խաղաղ և արագ առաջ կերթայ, որովհետև այդ բանի համար բոլոր կռուանները պատրաստ են։

## Յանցագործութիւնը Կովկասում

Երկրի խաղաղացումը արտաքուստ երևում է յանցագործութեան պակասելուց։ Այսպէս ահա ամենից տիպիկ տեսակները. սպանութիւններ, վիրաւորումներ, աւազակութիւններ և թալանումներ 1907 թուականից ոչ միայն զգալապէս և անընդհատ պակասում են խռովութեան ժամանակի համեմատութեամբ, երբ այդ տեսակ յանցագործութիւնների թիւը հասնում էր 17,000-ի, այլ և 1912 թուին նոյն իսկ 1500 դէպք աւելի պակաս էր, քան երկրի համար բնականոն (նորմալ) 1902 թուին, երբ 8,350-ի էր հասնում։ Այս արդէն չի կարելի մեծ յառաջադիմութիւն չհամարել, որովհետև Կովկասի աւազակութիւնների իսկական պատճառներն են մուսուլման ցեղերի յամառ տգիտութիւնը, վրաց գիւղերում պրոլետարիատի զարգանալը և երկրի յարմար ճանապարհների հաղորդակցութեան անապահովութիւնը, այսինքն այնպիսի հանգամանքներ, որոնց վերացնելու համար հարկաւոր են բաւական ժամանակ և մի շարք կուլտուրական միջոցներ։

—

Դառնալով Կովկասի գլխաւոր ազգութիւնների քաղաքական տրամադրութեանց, ես նախ և առաջ կանգ կառնեմ այսպէս կոչուած հայկական հարցի վրայ։ Արդէն վեց տարի առաջ ես կատարեալ անկեղծութեամբ յայտնել եմ, որ այդ հարցը պետութեան սահմաններում մենք ինքներս ենք ստեղծել անզգոյշ վերաբերուելով հայերի կրօնական և ազգային հայեացքներին։ Այդ հարցը շատ լաւ ըմբռնելու համար պէտք է միշտ յիշել, որ հայերի 4/5-ը ապրում է նախկին Հայաստանի՝ իր վաղեմի հողերի վրայ, մասամբ մեզ մօտ Կովկասում՝ Արարատի շուրջը, մասամբ էլ Տաճկաստանում։ Այդ հայերը բացառապէս շինական են, որոնք ակնյայտնի ջանասիրութեամբ պարապում են հողագործութեամբ, ըստ որում աշխատանքի այդ ճիւղը այնքան յատուկ է նրանց ոգուն, որ բոլոր քաղաքների բնակիչները մինչև այժմ էլ թւում են ամենից առաջ երկրագործ։ Հայերի միայն 1/5-ը ապրում է հայրենիքից դուրս և պարապում է բացառապէս առևտրա-արդիւնաբերական ձեռնարկութիւններով։ Այս պարագան ստեղծել է ընդհանրապէս այն սխալ կարծիքը հայերի մասին իրենց դրացի ազգերի մէջ, որպիսին, օրինակ, գոյութիւն ունի մեզնում—դատել յոյներին՝ իբրև ազգութիւն ընդհանրապէս՝ նրանց վաճառականներով։ Միւս կողմից էլ պէտք է յիշել, որ իրենց հայրենիքում ապրող հայերը միևնոյն ժամանակ մեծամասնութիւն չեն կազմում այն շրջանների ազգաբնակչութեան, ուր ապրում են, ինչպէս և մեզ մօտ՝ Կովկասում, նոյնպէս և Տաճկաց Հայաստանում։ Այսպիսի պայմաններում, չի կարելի մի կողմից ասել, որ հայերը մակարոյծ են, իսկ միւս կողմից վերագրել մինչև Ռոստով կամ Վորոնէժ հայկական թագաւորութիւն ստեղծելու առասպելը։

«Ոչ մի անջատողական ձգտում կովկասեան հայերը չունին», ինչպէս յայտնել եմ 1907 թուին, երբ դեռ ևս խռովութիւնը չէր դադարել. նոյնը համարձակ պնդում եմ այժմ։ Ռուսահայերի ազգայնական շարժման բռնկումը, որին հետևեցին ահաբեկման գործողութիւններ իշխանութեան ներկայացուցիչների դէմ, առաջ էր եկել հայոց եկեղեցական կալուածների յարքունիս գրաւմամբ. բայց այդ շարժումները միանգամից դադարեցին և, յուսալի է, անդառնալի կերպով, հենց որ հրատարակուեց Միապետի ողորմած հրամանը՝ կալուածները կրկին եկեղեցուն վերադարձնելու։ Ի հարկէ, յեղափոխական կուսակցութիւններ հայերի մէջ գոյութիւն ունեն, ինչպէս կան և ներքին Ռուսաստանում, իսկ հայ ժողովրդի յեղափոխականութեան մասին խօսելը՝ նոյնքան տարօրինակ է, որչափ և ասել, թէ ռուս ժողովուրդը հաւատարիմ հպատակ չէ իւր Միապետին։ Ուստի ամեն տեսակ փորձ, որ կը մեղադրի թէ հայ ազգութիւնը անջատողական ձգտումներ ունի, ջարդուփշուր է լինում իրական փաստերի առաջ, որոնք ընդհակառակը հաստատում են հայերի անձնուիրութիւնը Ռուսաստանին։ Այդ պատճառով յօդս ցնդեց բուն գործին անտեղեակ Պետրոգրադում ստեղծուած «Դաշնակցութիւն» կուսակցութեան հսկայական գործը, որը պիտի ապացուցէր մի ամբողջ ազգի յեղափոխականութիւնը։ Պետրոգրադի վարիչները, առանց ինձ տեղեկացնելու, սկսեցին մեծ էֆէկտով ամբողջ Կովկասում միաժամանակ կալանաւորել հազարաւոր հայեր, որոնց թւում նշանաւոր դրամատէրեր և հասարակական գործիչներ։ Գործը վերջացաւ նրանով, որ Սենատի Առանձին Ատեանը մօտ երեսուն հայերի զանազան պատիժների դատապարտեց։ Ներկայումս հաւասար չափով մենք նկատում ենք, որ ոչ միայն ռուսահայերը չեն ձգտում բաժանուել Ռուսաստանից, այլ և Տաճկահայերը եռանդագին ջանք են գործ դնում Ռուսաստանի հովանաւորութիւնը ձեռք բերելու, որը, ամենայն իրաւամբ, պէտք է տրուի նրանց։

(Կը շարունակուի) Տ.

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹԸ

Ուրբաթ, հոկտ. 28-ին, Թիֆլիսի Երաժշտական դպրոցի դահլիճում Հայ Գրողների Ընկերութեան գրական երեկոյթին պ. Մ. Մառէնճեան դասախօսեց «Պառնասեան ուղղութիւնը ֆրանսական գրականութեան մէջ» նիւթի մասին։

«19-րդ դարի երկրորդ կիսում, ռոմանտիկ դպրոցից անմիջապէս յետոյ, Ֆրանսիայում սկսեց ծաղկել ու զարգանալ պառնասական ուղղութեան բանաստեղծութիւնը։

Ըստ պառնասական ուղղութեան նշանաւոր ներկայացուցիչների բանաստեղծութեան նիւթը պէտք է լինի ոչ թէ անձնական յոյզեր, զգացմունքներ, այլ առարկայական խնդիրներ, իսկ արուեստը պէտք է լինի անթերի, այսինքն պառնասական ուղղութիւնը մի տեսակ հակադրութիւն էր ռոմանտիկ բանաստեղծութեան, որ 19-րդ դարի առաջին կիսում արդէն

երգել ու վերջացրել էր իւր բոլոր թրթիռները, անհատական հզօր զգացումներ, ներքին խորագոյն ապրումներ։

Պառնասեան բանաստեղծների երկերի մէջ մեծ տեղ են գրաւել Հնդկաստանի, Յունաստանի և արևադարձային երկիրների հաւատալիքներ, թանկագին քարերի, արձանների, նիստուկացի նկարագրութիւններ և այն բոլոր նիւթերը, որոնք ա ն ա ն ձ ն ա կ ա ն բնոյթ են կրում։ Պառնասական ուղղութեան ամենահանճարեղ ներկայացուցիչները եղել են Լը Կոնդ դը Լիլ և Թէոֆիլ Գոտիէն։

Սիւլլի-Պրիւդոմը նոյնիսկ գիտական, փիլիսոփայական և բարոյական խնդիրներ է արծարծում, սրտի յոյզերով գունաւորելով և տաքացնելով իր մշակած վերացական հարցերը։

Քաղաքական կեանքը ոչ մի ազդեցութիւն չէ թողել նրանց վրայ. Նրանց երկերում չենք գտնում ժամանակակից քաղաքական դէպքերի արձագանգները։ Նշանաւոր պառնասականները առանց այն էլ իրենց գրուածքների յառաջաբանում յայտարարել են, որ նրանք ոչ մի տեղ չեն տուել քաղաքական դէպքերին։ Բայց դրա փոխարէն դրապաշտ (պոզիտիւ) փիլիսոփայութիւնը ազդել է նրանց վրայ, քանի որ այդ վարդապետութիւնը նոյնպէս պահանջում էր, որ գիտութիւնը միայն իրերի հետ կապ ունենայ, որոնք կարող են մեր անմիջական քննութեան ենթարկուել, իսկ զգացմունքների, անհատական գիտողութեաց վրայ հիմնուած դատողութիւնները պէտք է անարժէք համարուեն։

Ընդհանրապէս կարելի է ասել, որ 19-րդ դարի կէսերին գիտութեան բոլոր ճիւղերը աւելի քննական և առարկայական բնոյթ են ստանում, քան մինչև այդ ժամանակ։ Նոյնիսկ վէպը Բալզաքի և Ֆլոբէրի միջոցով դառնում է իրական, առարկայական, այնպէս որ պառնասեան բանաստեղծութիւնը մի բացառիկ ու անբացատրելի իրողութիւն չէ, այլ ժամանակի ընդհանուր ձգտումներին համապատասխան բանաստեղծութիւն։

Այդ բանաստեղծութեան ամենախոշոր ներկայացուցիչներից՝ Լը Կոնդ դը Լիլը ծնուել է Մադակասկարից արևելք գտնուող մի փոքր կղզում, Հնդկական ովկիանոսում։ Նա տեղափոխուելով Պարիզ՝ մեծ եռանդով ուսումնասիրում է յունարէն, յոյն դասականութիւնը և առհասարակ հին կրօններն ու պաշտամունքները և իր ոտանաւորներին նիւթ է դարձնում մերթ Գանգէսի ափերը իրենց սրբազան աւանդութիւններով, մերթ արևադարձային փարթամ պէյզաժներ կամ ազազուն անապատը պայծառ լոյսից ու շոգուց հևալիս։

Այնինչ Գոտիէն, որ նախքան բանաստեղծ դառնալը նկարիչ էր, աւելի արձաններով, գոհարներով ու առհասարակ պլաստիկ արուեստների երկերով է ոգևորւում։

Մնացած պառնասականները քիչ կամ շատ չափով այդ երկու վարպետների շաւղով են ընթացել, առանց զուրկ լինելու անհատական առանձնայատուկ գծերից։ Միայն Սիւլլի Պրիւդոմն է, որ աւելի իր մտքի և սրտի աշխարհից է քաղել մշակած նիւթերը, որոնք յաճախ փիլիսոփայական բնոյթ ունեին. մի գթառատ սիրտ բաբախում է այդ սկեպտիկի տողերում, առանց բողոքի, առանց վայնասունի են նրա տրտունջները, այս պատճառով էլ առանձին տխրութիւն ունի նրա քնարը։

Գրեթէ բոլոր պառնասականները ունեին իրենց մէջ յոռետեսական գծեր. Նրանք ընտրում են գունաւոր պատկերներ և կրօնական տեսակէտով հեթանոսութիւնն է նրանց գրաւեցնող. Նրանք վերարծարծեցին հին հեթանոսական կեանքը առանձին թափով և կորովով։

Պառնասական ուղղութեան յաջորդող խորհրդապաշտ (սիմվոլիստ) բանաստեղծութիւնը, ընդհակառակն, աւելի դժգոյն և անորոշ գոյներով նկարագրում են բնութիւնն և մարդկային հոգին, բայց անհատական զգացմունքները կրկին դարձան բանաստեղծութեան նիւթ։

Առանց այն էլ պառնասական ուղղութիւնը իր բնաշրջման մեծ և որոշ դերը կատարել էր գրականութեան, և ոչ միայն հոյակապ ոտանաւորներ էր ստեղծել, այլ նաև «արուեստ արուեստի» համար տեսութիւնը սկզբունք դարձրել»։

Դասախօսութիւնից յետոյ եղան վիճաբանութիւններ, որոնց մասնակցեցին Աբրահամեան, Լիսիցեան և այլք։

Վիճաբանութեան խառնուեցին նաև այնպիսիներ, որոնք քիչ տեղեկութիւն ունէին Պառնասեան գրականութեան մասին։

Պէտք է զգոյշ լինել և բարձր պահել հասարակութեան տրամադրութիւնը։

X

## ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆԻ ԹԵՄԱԿԱՆ ԴՊՐԱՆՈՑԻ ՏԵՍՉԱՑՈՒՆ

Երուանդ Շահազիզի հեռանալով թափուր է մնում Ն.-Նախիջևանի դպրոցի տեսչութեան պաշտօնը։ Ռոստովում հրատարակուող «Գաղութ» շաբաթաթերթը իւր կողմից առաջարկում է Յուսիկ վարդապետ Զոհրաբեանին, որ ոչ միայն լաւ հայ է, կրթուած ազգային հոգով, որին լաւ ճանաչում է Ն.-Նախիջևանի հասարակութիւնը, որ ինքը եղած լինելով նոյն դպրանոցի սան, քաջ ծանօթ է տեղացի աշակերտութեան հոգեբանութեան, այլև, շարունակում է «Գաղութը», Յուսիկ վարդապետն առհասարակ տեղեակ է մեր, հայոց կեանքին, և դասաւանդման գործում մեծ փորձառութիւն ունի. վեց տարի եղել է Ս. Էջմիածնի հոգևոր Գէորգեան ճեմարանի վերատեսչի օգնական և երկար տարիներ այնտեղ դասատու, իսկ վերջերս Մոսկուայի Լազարեան ճեմարանի կրօնուսոյց։ Բացի այդ Յուսիկ վարդապետը աւարտելով Ս. Էջմիածնի հոգևոր ճեմարանը ուսել է արտասահմանի համալսարաններում աստուածաբանութիւն և աւարտել է Մոսկուայի համալսարանի իրաւաբանական մասնաճիւղը (ֆակուլտէտ)։

Արդ այսպիսի մի պատրաստութիւն ունեցող վարդապետ աստուածաբան և իրաւաբան և փորձառու ուսուցիչ ու վարչական անձն անշուշտ շատ յարմար է Նոր-Նախիջևանի դպրանոցի և մեր այլ դպրոցների համար։ Սակայն խնդիր է, թէ Ս. Էջմիածինը, որ այդպիսի վարդապետների մեծ կարիք ունի, որին անհրաժեշտ են առաջնորդացուներ Վան և Կարին ուղարկելու և երբ հենց Ս. Էջմիածնի ճեմարանն ինքը չունի այսօր աստուածաբանութեան և եկեղեցական իրաւագիտութեան ուսուցիչ, կը համաձայնի՞ արդեօք հաստատել մի այդպիսի ընտրութիւն։ Ժամանակ է վերջապէս, որ Մայր Աթոռը Յուսիկին և նմաններին եկեղեցական հոգևոր գործունէութեան կանչի և չթողնի, որ իւր պատրաստած ոյժերը վարժարանների (գիմնազիա) ուսուցչութիւն և կամ հենց հայոց դպրանոցներում տեսչութիւն անեն, մի գործ՝ որի համար պատրաստուած աշխարհականներ էլ շատ կան, մինչդեռ եկեղեցին այսօր այդպիսի հոգևորականների անչափ կարիք ունի։

Հ.

## ԲԱԳՈՒԱՑ ՀԱՅՈՑ ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԿԵԱՆՔԻՑ

Թեմիս առաջնորդ Բագրատ Սրբազանի ձեռնարկութեամբ սեպտեմբերի 11-ին Շամախում կայացել է Մ. Ընկ. անդամների ընդհանուր ժողովը, որ որոշել է բանալ Շամախում Ընկ. բաժանմունքը։ Վարչութեան անդամները ընտրուած են։ Բաժանմունքի գլխաւոր նպատակն է օգնել ժողովրդին ի նկատի ունենալով ներկայ ծանր պարագաները։

Ա. Ս. Մսիրխանեանը հոկտեմբերի 10-ի գրութեամբ խնդրում է Ընկ. հովանաւորութեան տակ վերցնել իւր նախաձեռնութեամբ Բահլեանում (Շամախու գաւ.) բացուած ծխ. դպրոցը,

*խոստանալով առայժմ տարեկան նպաստ տալ 500 ռ.։ Առաջիկայ ուս. տ. նպաստը արդէն ստացուած է։*

*Ներկայ 1917 դպրոցական տ. Մ. Ընկ. նպաստով պահուող դպրոցների թիւը հասել է 18-ի (Շամախու թեմում), որոնցից երկուսը պահւում են՝ մէկը տ. Թ. Եղիազարեանի նուիրաբերած գումարի տոկոսներով, իսկ միւսը՝ պ. Ա. Մսիրեանի գումարով։*

*Ներկայ ծանր պայմանները, քայքայելով գաւառի ժողովրդի տնտեսական դրութիւնը, զգալի կերպով նուազեցրել են դպրոցի եկամուտները՝ ծխական տուրքերը և ուսման թոշակը։*

*Ուստի Մ. Ընկ. ստիպուած է եղել առաջիկայ դպրոց. տ. համար նպաստը կրկնապատկել, որը հասնում է 6000 ռուբլու․ չհաշուելով թեմական տեսչի ռոճիկը և դպրոցական գոյքերի առթիւ եղած ծախքերը։ Բացի այդ փոխադարձաբար տրուած է դպրոցների դասական պիտոյքների համար 1000 և Մէյսարի գիւղի դպրոցի շէնքի աւարտման համար 500 ռ.։*

*Ստացուած է Յ. Ա. Սահակեանի ժառանգներից «Զիգիթ» շաբաթաթերթի միջոցով Ընկ. որբանոցի օգտին յիսուն (50) ռ.։*

## ՎՐԱՑԱԽՕՍ ՀԱՅԵՐԸ

### ՄԻ ՔԱՅԼ ԱՌԱՋ

*Վերջերս մի շարք կենսական հարցերի հետ ուժեղ թափով և իրաւամբ հրապարակ է հանուել նաև վիրախօս հայերի մէջ մայրենի կրթութիւն տարածելու և ազգային ինքնագիտակցութիւն զարթեցնելու հարցը։ Այդ ուղղութեամբ շատ գործնական առաջարկներ եղան վերջերս հայ մամուլում, մանաւորապէս «Հորիզոնում», «Արևում» և «Համբաւաբերում»։ Բարեբաղդաբար այդ կոչերը անհետևանք չը մնացին և գլխաւորապէս անդրադարձան դպրոցների բազմացման վրայ՝ վիրախօս հայերի մէջ։ Այս տարուանից բացի գոյութիւն ունեցող մի քանի ուսումնարաններից (Բախուրեկ, Վազա, Ախալքալաք, Կասպի, Ցխինվալ, Ախալ-Գորի), նոր դպրոցներ են բացւում նաև Ձեգևի, Կաւթիս-Խեւի, Ղարախաչ, Կարալէթ և Տղվիսւ գիւղերում յանձինս բարերար Աֆրիկեանի, Թիֆլիսի «Քահանայական յանձնաժողով»ի, Կ. Հ. Բ. Ընկերութեան, ինչպէս և բարոյական ջերմ օժանդակութեամբ մասնաւոր անհատների։ Անցեալ շաբաթ լիազօր Ս. ա. ք. Շիոյեանցը տեղական պայմաններին քաջածանօթ Ս. ա. ք. Խախանեանի հետ շրջեց յիշեալ գիւղերը և տեղական հոգաբարձութիւններ ընտրեց, որոնց շնորհիւ գիւղացիները տալու են միայն դպրոցակ. շէնք, ծառայ և վառելիք, իսկ ուսուցիչների ռոճիկները հոգալու են յիշեալ մարմինները և պ. Աֆրիկեանը, որը պատրաստակամութիւն է յայտնել իր նպաստով պահուելիք դպրոցների թիւը առայժմ հասցնել եօթի։ Յուսանք, որ մեր միւս հարուստներն էլ հարկաւոր գումարներ չեն խնայիլ այս մեծ գործի համար և կը շտապեն ձեռնամուխ լինել դպրոցների բացման և ուրիշ քիչ թէ շատ հայաշատ գիւղերում, ինչպիսիք են Ումլիս-Ցիխէ (120 տ. ամբողջովին հայաբնակ) և Ալի, Դօէս, Դիրբ, Անանուր, որպիսի գիւղերում 100—120-ական ծուխ հայեր կան։*

*Այս բոլորից յետոյ մենք թեմական իշխանութեան և մասնաւորապէս պ. Տէր-Աւետիքեանի լուրջ ուշադրութիւնն ենք հրաւիրում նորաբաց դպրոցների համար յարմարագոյն և նուիրուած դասատուներ հրաւիրելու։ Այլ է քաղաքի, այլ է գիւղական հասարակութիւնների հոգեբանութիւնը։ Հարկաւոր են այնպիսի դասատուներ, որոնք տեղական հանգամանքներին իրազեկ լինելով հանդերձ՝ միշտ բարձր պահեն գիւղացոց տրամադրութիւնը և տեղական հասարակական կեանքի առանցքն ու ղեկավարը հանդիսանալով՝ կապեն ժողովուրդը դպրոցների հետ, որով միշտ նրանց օժանդակութիւնը շահած կը լինեն յօգուտ ուսումնարանի։ Միւս կողմից հրամայական պահանջ է դրւում, որ թեմական տեսուչը մի օգնական ունենայ, ինչպէս նորաբաց, նոյնպէս և վիրախօս շրջանի դպրոցական կեանքին աչալուրջ կերպով վերահասու լինելու համար, որովհետև մի մարդու համար ֆիզիքական հնարաւորութիւնից դուրս է միանգամայն Թիֆլիսի լայնածաւալ թեմն ըստ պատշաճին կառավարել։ Ցանկալի է նոյնպէս, որ թեմական տեսուչը այս տարի վիրախօս շրջանի դասատուներից մի ուսուցչական համաժողով գումարի՝ իրար ծանօթանալու համար, ինչպէս փորձնական դասերով, այնպէս և դպրոցական հարցերի շուրջը եղած խնդիրների նուիրած մտքերի փոխանակութեամբ։*

*Բերկրանքով արձանագրելով այս բոլորը, կարծում ենք, որ գէթ այս անգամ կազատուենք մեր դրացիների մի մասի սիրած «վրացախօս Գրիգորեաններ» տիտղոսից և կունենանք «հայախօս Գրիգորեաններ»։*

*Գիսակ*

## ԳԱՒԱՌ

*ՍՈՒԼՏԱ, 24 հոկտեմբերի.—*

*Գիւղիս Հայոց եկեղեցական-ծխ. միդասեան դպրոցը բացուեց այս ամսի 5-ին և նոյն օրը կանոնաւոր կերպով պարապմունքները սկսուեցին։ Դպրոցը առայժմ յաճախում են 100 աշակերտ, որից 20-ը աշակերտուհի. աշակերտների թիւը օր աւուր աւելանում է։ Դպրոցում դասաւանդում են 1 ուսուցիչ և 2 ուսուցչուհի. հոգաբարձութիւնը աշակերտական թոշակ իւրաքանչիւրին հաւասարապէս որոշել է 5 ռուբլի. արդեօք լաւ չէր լինի, որ թոշակի քանակի չափը որոշուէր ըստ ծնողների նիւթական կարողութեան, ինչպէս մեր այլ վայրերի շատ դպրոցներում. այդ ձևը գոյութիւն ունի հենց մեզ մօտ Ախալքալաքի դպրոցներում։ Սուլտայի դպրոցը միդասեան լինելով, շատ աշակերտներ անցեալ տարուանից աւարտելով այս տարի փափագում են շարունակել իրանց ուսումը, բայց՝ 4-դ բաժանմունք գոյութիւն չունենալով, զրկւում են դպրոցից և իրանց սովորածը մոռանում են։ Այս դպրոցական տարուայ դպրոցիս եկամուտը հասնում է 1500 ռուբլու, որ նախահաշիւը իր ժամանակին կազմուած է և թեմիս Սրբազան Առաջնորդի կողմից հաստատուած։ Շնորհիւ մեր հայրենակից պ. Յովհաննէս Մալխասեանի և գիւղիս շինարարական հոգաբարձութեան ժրաջան և եռանդուն ջանքերի՝ մի ամսից յետոյ նորակառոյց հսկայական ու փառաւոր Սուլտայի դպրոցի շէնքը պատրաստ կը լինի և աշակերտութիւնը կը տեղափոխուի այնտեղ։ Այս տարի ես Ջաւախքի բազմաթիւ հայաբնակ գիւղերը զուրկ մնացին դպրոց ունենալուց. արդեօք ով պէտք է մտածի, հոգայ այս մասին. իւրաքանչիւր գիւղում երկսեռ մանուկներ մնում են առանց ուսման։ Վերաբացւում են Կարզախ և Խօջաբէկ գիւղերի ծխ. դպրոցները։*

*—Այս տարուայ աշունը բաւական ջերմ և երաշտ է. խեղճ ու կրակ գիւղացին, թէև աշխատող ձեռքերից զուրկ, այնուամենայնիւ մի կերպ աշխատում է ձմրան պատրաստութիւն տեսնել։ Հացը, ինչպէս և կենսական այլ մթերքներ, օրէցօր թանգանում են։ Գարու սոմարը (16 պ.) վաճառւում է 34—35 ռ., ցորենի սոմ. (20 պ.) 80 ռ.։ Մեծ կարիք կայ Ջաւախքում Ռուսաստանի ալիւրի։ Ինչպէս Սուլտայում, նոյնպէս Կարզախ գիւղում երեխաների մէջ տարափոխիկ հիւանդութիւն կայ…*

*Արսէն քահ. Բլրցեան*

*ՇՐՎԻՆԱՆՑ գիւղի. դպրոցի աւագ ուսուցիչ Գ. Տէր-Մինասեանը գրում է, որ պ. Գ. Տէր-Մարգարեանի անուամբ պահուող*

«Շրվինանց» դպրոցը թևակոխելով իւր գոյութեան ԺԸ. տարին, ուսուցչական լրիւ կազմով կանոնաւոր պարապմունքները սկսել է սեպտեմբերի 13-ին։

Ուսուցչական կազմը բաղկացած է վեց հոգուց, որոնցից իւրաքանչիւրը ունի 16—27 դաս, տարեկան 480 ռ.—1000 ռ. ռոճիկով և յարմարութիւններով։ Բոլոր ուսուցիչներին տրւում է տարեկան 3,100 ռ., որ անցեալ տարուանից 345 ռուբլով աւելի է։ Աշակերտների ընդհանուր թիւն է 136, որից 106 տղայ և 30 աղջիկ։ Դասաւորուած են հինգ բաժանմունքներում։ Այս երկարատև համաշխարհային պատերազմը խլելով հայ ընտանիքից կենսունակ, աշխատաւոր ուժերը ծայրայեղ թշուառութեան է հասցրել հայ ժողովրդին տնտեսապէս, իսկ իրար յաջորդող անբերրի տարիները միանգամայն յուսահատական վիճակ են ստեղծել մանաւանդ Զանգեզուրի հայ ազգաբնակութեան համար, որ աշխարհագրական դիրքի և հաղորդակցութեան անտանելի ճանապարհների շնորհիւ մեկուսացած լինելով կենտրոններից, այսօր սովի ու քաղցի է մատնուած բառիս բուն իմաստով։

Այսպիսի դժնդակ պայմաններում ապրող ժողովուրդը բնականօրէն չի կարող մտածել ուսման մասին և հենց այդ պատճառով գաւառական ուսուցչի վրայ ծանրանում է մի նոր պարտք.— այցելել տները, խրախուսել ծնողներին համբերութեամբ տանելու զառնութեան բաժակը և սովալլուկ ընտանիքից կորզելու ու դըպրոց բերելու դպրոցական հասակ ունեցող պատանիներին։

***

Նոյն տեղից.—1914 թ. դեկտեմբերի 8-ին, Շրվինանց դպրոցի ուսուցչական և հոգաբարձական մարմինները ի յիշատակ վաղաթառամ վարժուհի տ. Աննա Տէր-Մինասեանի կազմել են «Աղքատախնամ ընկերութիւն», որի նպատակն է դպրոցիս չքաւոր աշակերտուհիներին մատակարարել հագուստ և դասական պիտոյք։

Այդպիսի մի ընկերութեան կարիքն այժմ աւելի քան երբեք զգալի է և ուրախութեամբ կարելի է արձանագրել, որ նա ի վիճակի է այսօր բաւական լայն չափերով ընդառաջ գալու մեր չքաւոր աշակերտութեան կարիքներին և մասամբ ամոքել նրանց թշուառութիւնը։ Այդ ընկերութիւնը առ 29 մայիսի 1916 թ. ունեցել է կանխիկ դրամ 328 ռ. 69 կ.։

Դպրոցի աւագ ուսուցիչ պ. Գ. Տէր-Մինասեանը հանքային ջրերում բժշկուելու ժամանակ հանգանակել է յօգուտ յիշեալ ընկերութեան 1285 ռ., որից 600 ռ. նուիրողները՝ պ. պ. Ն. Ժամհարեան 100 ռ., Մ. Բալանթարեան 100 ռ., Գ. Ծատուրեան 100 ռ., Շ. Ծատուրեան 100 ռ., տիկ. Շ. Տէր-Մարգարեան 100 ռ., պ. Գ. Եղիազարեան 50 ռ. և Ե. Սարգսեան 50., խոստացել են պարբերաբար վճարել իւրաքանչիւր տարի, իսկ 685 ռ. միանուագ։ Ընդամէնը այդ ընկերութիւնը ներկայիս ունի 1613 ռ. 69 կ.։

Աղքատախնամ ընկեր. ունենալով իւր ձեռքի տակ այդ գումարը, որոշել է ներկայ տարուայ ընթացքում 40-ի չափ աշակերտուհու տալ հագուստ կ դասական պիտոյք։ Բացի այդ Ընկերութիւնը հետամուտ է ստեղծելու տեխնիկական մի քանի յարմարութիւններ հեռաւոր գիւղերից յաճախող աշակերտներին թէյ տալու, իսկ մի 20—25 հոգու համար էլ դպրոցին կից հանրակացարան պատրաստելու։

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը իւր 29 հոկտեմբերի նիստում արել է հետևեալ որոշումները.—

ա) Խորհրդի Նախագահ պ. Ս. Յարութիւնեանը յայտնեց ժողովին, թէ Թիֆլիսի Ժողովարանը՝ համաձայն իւր միջնորդութեան, որոշել է տալ յօգուտ Ընկերութեան ճաշարանի 1000 ռ.։

Խորհուրդը որոշեց յայտնել շնորհակալութիւն Ժողովարանի աւագների Խորհրդին։

բ) Թիֆլիսի վաճառական Աբէլ Յովհաննիսեան Ամիրաղեանը, ներկայանալով Խորհրդին յայտնեց, թէ Բարանա գիւղում իւր ծախսով կառուցած նոր դպրոցական երկյարկանի և 8 սենեակից բաղկացած քարէ շէնքը, որ նստել է մօտ 15,000 ռ. և 60 դեսեատին վարելահող նուիրում է Կ. Հ. Բ. Ընկերութեան այն պայմանով, որ Ընկերութիւնը այդ շինութիւնը ծառայեցնի գիւղական դպրոցին՝ Բարանա և շրջակայքի հայ գիւղերի մանուկների կրթութեան համար։

Խորհուրդը շնորհակալութիւն յայտնելով բարերարին՝ որոշեց հենց այս տարուանից բանալ դպրոցը։

գ) Տարեկան ընդհանուր ժողովը նշանակել առաջիկայ դեկտեմբերի 18-ին և այդ առթիւ գրել ճիւղերին, որ շտապեն նախահաշիւները ներկայացնել։

դ) Կարդացուեց վանեցի 25 ոսկերչի խնդիրը, որոնք խնդըրում են միջնորդել Երևանի գաղթականական կոմիտէին՝ իրենց 20,000 ռուբլի նպաստ տալու։

Որոշուեց միջնորդութիւն յարուցանել և խնդրել դրամը ուղարկել Ընկերութեան միջոցով։

ե) Աշտարակի բնակիչ ուսանող Մեսրոպ Սուքիասեանի նամակի համաձայն, ուղարկել Ընկերութեանս կանոնադրութիւնը և թոյլ տալ բանալ Ընկ. ճիւղ և նրան կից գրադարան-ընթերցարան «Աշտարակի հասարակական Պռօշեան ընթերցարան-գրադարան» անունով։

զ) Թիֆլիսի գործակալ Ղևոնդ քահ. Մամիկոնեանի յայտարարութեան համաձայն՝ բանալ բացի Սագարէջօ գիւղից, Ախալտափէլ գիւղում ևս մի դպրոց և յատկացնել այդ դպրոցին տարեկան 500 ռուբլի։

***

Կ. Հ. Բար. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է առաջին մասնաւոր գրաւատան (լոմբարդ) ծառայողներից յօգուտ փախըստականների 9 ռ. 32 կ.։

### ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Հայկ. Կենտ. Կոմիտ. գաղթ. նպաստաբաշխ յանձնաժողովի միջոցաւ 1916 թուի հոկտ. 23-ից մինչև 29-ը մի շաբաթուայ ընթացքում վճարուած է 70 գաղթականի 211 ռ. 33 կ., 12 անձի ճանապարհի ծախս 39 ռ. 65 կ., գումարը 250 ռ. 98 կ.։

***

1916 թուի մայիսից մինչև 1916 թուի հոկտ. 22-ը՝ վեց ամսուայ ընթացքում Հայկ. Կենտ. Կոմիտէի գաղթ. նպաստաբաշխ յանձնաժողովի միջոցաւ վճարուել է 1518 կոյր, հիւանդ և անկեալ գաղթականներին առժամանակեայ նպաստ 3427 ռ. 37 կ. և 1585 գաղթ. հացի և ճանապարհի տոմսի դրամ 3618 ռ. 11 կ., գումարը 7046 ռ. 28 կ.։

—

Նոյեմբերի 3-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի նիստը նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղան հետևեալ որոշումները.

1.—Լոնդոնում յանձինս պ. Ա. Սաֆրաստեանի ունենալ ներկայացուցիչ՝ հայ գաղթականների օգտին ժողովարարութիւնը կատարելու համար։

2.—Գանձակի շրջանի Ասորի գաղթականները դիմել էին Կոմիտէի Գանձակի լիազօրին և խնդրել, որ իրենց երեխաների համար ևս դպրոցներ բացուին այնտեղ. Կ. Կոմիտէն որոշեց յարգել նրանց խնդիրը և այդ առթիւ յայտնեց գէն. Թամամշեանին։

3.—Նուխուայ հայ հասարակութիւնը ցանկութիւն էր յայտ-

նել Կոմիտէին ունենալ 100 որբերից բաղկացած մի որբանոց։ Այդ առթիւ խնդրել էին Կոմիտէից, որ որբանոցը իր հովանաւորութեան տակ առնի և տեղեկութիւններ հաղորդի որբանոցի մասին առհասարակ։

Որոշուեց ուղարկել որբանոցի վերաբերեալ տեղեկութիւններ և բաց անել որբանոցը, ոչ թէ Նուխում, այլ Ցարսկիէ-Կալոդցում։

4.—Արդանուչի և Տանձոտի համար որպէս լիազօր, որոշուեց ուղարկել Արդահանի Բ. Ընկ. ճիւղի Նախագահ՝ Ս. Մինասեանցին և ուսուցիչ Ս. Վ. Մազմանեանին, որոնց և առաջարկուեց ծանօթանալ գաղթականների կարիքներին և յայտնել կոմիտէին։

5.—Թիֆլիսի Արևմտահայ Ուս. Միութեան դիմումի վրայ, որոշուեց դպրոցական յանձնախումբի և Կ. Կոմիտէի մէջ հրաւիրել Միութիւնից մի մի ներկայացուցիչ

6.—Կ. Կոմիտէն Թիֆլիսում ճոթեղէնի պահեստ բացած լինելով, որոշեց յայտարարել այդ բոլոր որբանոցներին։

7.—Կոմիտէի Վանի լիազօր Օհանջանեան հեռագրում է, որ Վանում արդէն բացուել են գաղթ. դպրոցներ։

8.—Բագուից հաղորդում են Կոմիտէին, որ պ. Տէր-Միքայէլեան յաջողել է գնել 30,000 արշ. քաթան գաղթականների համար։

9.—Աստրախանից Հ. Կ. Կոմիտէի անունով շնորհակալութեամբ ստացուել է հազար ռուբլի յօգուտ որբանոցին. Նուիրատուն պ. Խալաթեանն է։

## Որբանոցների յանձնաժողովը

Որբանոցների յանձնաժողովը որբանոցների համար միօրինակ մի կանոնագիր կազմելու համար, խառն նիստ գումարեց նոյեմբ. 4-ին Թիֆլիսի բոլոր որբանոցների խնամակալութիւնների ներկայացուցիչներից։

—

Հայկ. Կենտ. Կոմ. կից գաղթ. դպրոց. յանձնաժողովի բացած գաղթ. դպրոց. սովորող աշակերտների թիւը հասնում է 6,428 հոգու, իսկ նոր բացուելիք դպրոցների աշակ. թիւը՝ 3,908 հոգու։

—

Գաղթականական դպրոցների համար ուղարկուած է 17,772 ռ. 50 կ., դասական պիտոյքների համար ծախսուած է 5,257 ռ. 84 կ., գրասենեակային ծախս, ուսուցիչների ռոճիկ և ճանապարհածախս 600 ռուբ., գնուած են դասագրքեր 797 ռ. 81 կ., յանձնաժողովի կողմից ուղարկուած են 15 ուսուցիչ։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄ. ԳԱՂԹ. ԴՊՐՈՑՆԵՐԸ

Տաճկաստանի Ղարաքիլիսէից լիազօրը հեռագրում է, որ Մանզասարում և Սանջանում բացել է գաղթականական դպրոցներ։ Առաջինում սովորող երեխաների թիւը 90 է, իսկ երկրորդում՝ 70։

* * *

Լիազօր Փարաջանեանը հոկտ. 31-ից հեռագրում է, որ բացել է գաղթ. դպրոցներ Խաչլու և Կայարէկ գիւղերում։ Առաջինում կայ 40, իսկ երկրորդում 50 աշակերտ։ Խնդրում է ուղարկել ուսուցիչներ, դասագրքեր և դասական պիտոյքներ։

* * *

Ըստ Վարդան Մազմանեանի տուած զեկուցման՝ Տանձոտ գիւղում բացուած է գաղթ. դպրոց 200 աշակերտով և չորս բաժանմունքով, որի համար պ. Մազմանեան խնդրում է ուղարկել դասագրքեր և ուսումնական պիտոյքներ։ Գաղթ. դպրոց. յանձնաժողովը նկատի առնելով պ. Մազմանեանի վերոյիշեալ խնդիրքը, որոշեց ուղարկել պահանջուած բոլոր դասագրքերն և ուսումնական պիտոյքները։

# Քրոնիկոն

Անցեալ կիրակի առաջնորդարանում սենատոր Զալլինը ունեցաւ խորհրդակցութիւն հայ կազմակերպութիւնների ներկայացուցիչների հետ գաղթականների դրութեան մասին։ Զեկուցումը ներկայացրեց Հայկական Կ. Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը։ Սենատոր Զալլինը յայտնեց, որ նա, վերադառնալով Պետրոգրադ, կաշխատի, որ Մեծ Իշխանուհի Կոմիտէն գոհացում տայ գաղթականների կարիքներին։ Պ. Ս. Յարութիւնեանը սեն. Զալլինի խնդրանօք, հետևեալ օրը ներկայացրեց նրան գրաւոր զեկուցում։ Պ. Զալլինը ուղևորուեց Պետրոգրադ 1-ին նոյեմբերի։

* * *

Կիրակի, հոկտեմբերի 30-ին, պետական բանկի Թիֆլիսի բաժնում կայացաւ մի բազմամարդ ժողով Թիֆլիսի առևտրական և ֆինանսական շրջանների և խոշոր ֆիրմաների ներկայացուցիչներից։ Ներկայ էին գլխաւորապէս հայեր՝ թւով մօտ 170 հոգի, իսկ այլ ազգութիւններից մի քանի հոգի էին. ժողովականները ստորագրեցին 3,137,000 ռ. պետական 1916 թ. պատերազմի առթիւ բաց թողնուող $5^1/_2$ % արժէթղթերի։

* * *

Գեղարուեստը խրախուսող Կովկասեան Ընկերութիւնը բաց է անում պատկերահանդէս, որին մասնակցելու են նկարիչներ՝ Բաշինջաղեան, Զանկովսկի, Զախարով, Շմերլինգ, Գրինևսկի և ուրիշները։

* * *

Քաղաքային Վարչութեան անդամ Միքայէլ Աթաբէգեանը Դումա մտցրեց մի զեկուցում՝ Հաւլաբարում գրադարան-ընթերցարան բանալու։

* * *

Հայ Գրողների Ընկերութիւնը արդէն տպագրութեան է յանձնել գրական երեկոների դասախօսութիւնները։ Շուտով լոյս կտեսնի տիկ. Զ. Եսայեանի «Թրքահայ ժամանակակից գրողները» դասախօսութիւնը։

* * *

Բագւում բացուել է ուսուցչական կուրսեր։ Հոկտեմբերի 10-ից պարապմունքներն արդէն սկսուած են։

* * *

Կ. Հ. Բ. Ընկ. և Նպաստամատոյցի օժանդակութեամբ Թիֆլիսում բացուած Վանեցի ոսկերիչների արհեստանոցի արտադրած արծաթէ բազմատեսակ շքեղ իրերը վաճառքի են հանուած պ. Ե. Ծատուրեանի խանութում (Դվորցովայա փողոց)։

* * *

Հոկտեմբերի 30-ին Երևանում կայացել է Վանեցի ոսկերիչների գործերի միօրեայ ցուցահանդէս։ Այցելուների թիւը հասել է 4000-ի։ Մի շաբաթից յետոյ ցուցահանդէսը կը կազմուի Թիֆլիսում, այնուհետև Բագւում, Ռոստովում, Մոսկուայում և Պետրոգրադում։

* * *

Պարիզից Թիֆլիս եկաւ քանդակագործ Յ. Գիւրջեանը, որը մտադիր է հայ գրողների և հասարակական գործիչների անդրիներ պատրաստել։

* * *

Հայ Գրողների Ընկերութիւնը հրաւիրել է ուսուցչապետ Մառին՝ Թիֆլիսում դասախօսութիւն անելու հայագիտութիւնից և կովկասագիտութիւնից։

Կայացաւ Կովկասեան Բուժական (курортное) Ընկերութեան արտակարգ նիստը և որոշուեց փետրուարի 20—26 հրաւիրել համագումար։ Սպասւում է, որ համագումարը կը լինի բազմամարդ․ հրաւիրուել են մայրաքաղաքների յայտնի գիտնականներ մասնակցելու համագումարին։

***

Ռումինիայից հասել են Բեսարաբիա նահանգը մօտ 2000 հայ գաղթական։

# Արտաքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### «ՖՐԱՆՍ-ԱՐՄԵՆԻ» ԿՈՄԻՏԷՆ

Ֆրանսական ազգը, որ արդէն այնքան բան է արել մեզ համար անցեալում, մի անգամ էլ գալիս է ապացուցելու իր պաշտպանութիւնը հայկական դատին։ Մեր դրութեան նկատմամբ այդ համակիր վերաբերմունքը սկսում է գարհուրելի կոտորածների առաջին օրերից իսկ, և հենց այն ժամանակ բողոքի աղաղակներ բարձրացնելով Թիւրքիայի դէմ, հասկացանք, որ յանձին Ֆրանսիայի մենք ունենք մի ազնուահոգի և անկեղծ պաշտպան բարեկամ։

Ֆրանսիան նկատի առաւ մեր կացութիւնը, պաշտպանեց մեր կենսական շահերը—ո չ մ ի ա յ ն ա յ ն, որ մենք էլ իրաւունք ունինք գոյութեան՝ ուրիշ ազգերի նման, ոչ միայն իրաւական հողի վրայ, այլ և համակրութեան մի մեծ թափով։ Ֆրանսիան հետաքրքրւում էր մեր ճակատագրով ոչ միայն նրա համար, որ մենք ճնշուել ենք ու կոտորուել անքաղաքակիրթ մարդկանց կողմից․ ոչ, աւելի զօրաւոր մի գործօն էր Հայաստանը ձգում դէպի Ֆրանսիան—դա միևնոյն ընդհանուր քաղաքակրթութիւնն ու մշակոյթն էր։ Ֆրանսիան շատ լաւ էր զգացել, որ հայ ժողովուրդն աւելի մեծ յարգանքի ու աւելի մեծ ուշադրութեան է արժանի, քան ալբանացիները, քան չերնոգորցիներն և ուրիշները․ որովհետև մենք քաղաքակրթուած ենք, մեր սեփական մշակոյթն ու գրականութիւնն ունենք և ամբողջ դարերի ընթացքում, վայրենի հորդաների լծի տակ կորցրինք մեր հողերը, մեր անկախութիւնը, ազատութիւնը, բայց և պահեցինք ինչ որ մեզանից չէին կարող խլել—մեր մ ի տ ք ը․ հայ միտքը զերծ մնաց օտարի ձեռնամխութիւնից ու ազդից, որովհետև դրաւումների և հալածանքների ժամանակ նա գնում էր փակուելու մեր վանքերի մէջ։

Սակայն Ֆրանսիան չկասեց իր բարի գործով և ֆրանսական ազգին մեր ունեցած պարտքը ներկայումս աւելացաւ «Ֆրանս-Արմենի» կոմիտէի հիմնուելովը՝ կազմուած «Ֆրանս-Օտար բարեկամութիւնների դաշնակցութեան» նախաձեռնութեամբ։

Նոր կոմիտէի ծրագիրն է պաշտպանել ֆրանսական շահերն Արևելքում և հայերի ազգային պահանջները․ սա համարեա նոյն նպատակն ունի, ինչ որ Լոնդոնի «Անգլօ-Հայկական» կոմիտէն, որ հիմնուեց Հայաստանի շահերի վրայ հսկելու համար։

Այս նոր միութեան կազմակերպիչ կոմիտէն առաջին նիստն ունեցաւ նախկին մինիստր Լէյգի և նախագահութեամբ ֆրանսական ակադեմիայի անդամ Լամիի, դը Շաւանի և Պօղոս Նուպար փաշայի մասնակցութեամբ։

Բարեբախտաբար և ի շահ հայկական դատի, քաղաքական, տնտեսական և իմացական աշխարհի ականաւոր անձնաւորութիւնների մի խումբ հաւաքուեց այդ կոմիտէի շուրջը։

Տեղի սղութեան համար դժբախտաբար միայն մի քանի անուններ կը յիշենք այդ անունների ցանկից.—Բլեմանսօ, Դընի Կոշէն, Անատոլ Ֆրանս, Լամի, Պենլըւէ, Սարրօ, Ժորժ Լևի, Ռընօ, Մալէ-Պենոն, Պոլ Ադամ, Կուլոն, Ֆինօ, Դումերգ, Սէայլ, և այլն, և այլն։ Մի խօսքով՝ ֆրանսացի գրական ու քաղաքական բոլոր յայտնի դէմքերը։

Դը-Շաւանը, կոմիտէի հիմնադիրներից մէկը, արտասանեց մի ճառ, որ շատ է ծափահարուել։ Նա յիշեցրեց ապրիլ ամսում հայերի պատուին Սորբոնում կազմակերպուած միտինգը—հանդէսը, Պետ. Դումայի անդամների Պարիզում գտնուած ժամանակ հայերի նկատմամբ արտայայտուած համակրանքը։

Ապա նա ընդգծեց հայերի փառաւոր անցեալը, քաղաքակիրթ աշխարհում նրա ձեռք բերած անջնջելի անունը և շեշտեց նրանց իրաւունքը, որ պիտի ճանաչուի վերջապէս՝ դարերի ընթացքում նրանց կրած բոլոր աղէտներից յետոյ։ Յիշեց ռուսների վերջին յաղթանակները Փոքր-Ասիայում, որոնք նախերգանքն են հայերի վերջնական ազատագրութեան։

Նա շարունակեց պնդելով, որ անհրաժեշտ է յանգիլ հետեւեալ որոշման, թէ «պատերազմից յետոյ հայկական հարցը լուծուի՝ հայերի օրինական տենչերին կատարեալ բաւարարութիւն տալով, քանի որ նրանց շահերը զուգադիպում են դաշնակիցների շահերին, և պահանջները ոչ միայն չեն հակասում, այլ և կատարեալ համաձայնւում են Ֆրանսիայի տեսակէտներին»։

Ինն դար առաջ Ֆրանսիան Հայաստանին միացնող կապերը, որ մի ժամանակ մոռացուած էին, ներկայումս աւելի են ամրապնդուած։

«Ֆրանս-Արմենի» կոմիտէի համար ոչինչ աւելի հեշտ չէ, շարունակեց դասախօսը, քան մշակել մի ծրագիր՝ ֆրանսիացիների և հայերի միջև մտածուած մի գործակցութեան համար, որ «կարող էր օգտագործուել Ֆրանսիայի օրինաւոր ու բարերար ազդեցութեան համար»։

Մենք այստեղ տուինք միայն էական մասերը դը-Շաւանի շահեկան ճառի, նոյնը պիտի անենք նաև Պօղոս Նուպար փաշայի ճառի համար։

Հայ պատուիրակութեան նախագահը նախ շնորհակալութիւն յայտնեց Ֆրանս-Օտար բարեկամութիւնների դաշնակցութեանը՝ նոր կոմիտէն կազմելու մասին նրա ունեցած նախաձեռնութեան համար։ Յետոյ նա յիշեց Հայաստանում տեղի ունեցած վերջին արիւնալի դէպքերը, և հաւաստեց, թէ հաստատ յոյս ունի, որ հայերը բոլոր ժողովուրդներից ամենահալածուած ու ամենաճընշուածները, կազատուեն իրենց դժբախտ դրութիւնից և թէ այս դաժան փորձութիւնը կը լինի վերջինը։

Հայերը սպանուեցին ու հալածուեցին, ասաց Նուպար փաշան, բայց նրանք չբնաջնջուեցին և աւելի քան երբէք պատրաստ են կատարելու իրենց պատուաւոր դերը՝ Արևելքում լինել քաղաքակրթութեան դրօշակակիրը»։

«Մեր պահանջները համեստ են ու չափաւոր, ասաց ճառախօսը, և պարզ է, որ խաղաղութեան վեհաժողովում հայկական հարցը արդար մի վճիռ ստանայ, ինչպէս միւս բոլոր տանջուած ազգերը»։

Հայկական հարցը հիմնւում է իրաւունքի, արդարութեան ու մարդասիրութեան զգացումների վրայ, որոնք պիտի յաղթանակեն ներկայ պատերազմից յետոյ և այդ զգացումները ապետական Ֆրանսիայի—սկարների այդ յաւիտենական պաշտպանի, ազնիւ աւանդութիւններն են կազմում։

Սուրէն

### ԱԶԳ. ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ ԱՄԵՐԻԿԱՅՈՒՄ

Ամերիկայում հրատարակուող «Պահակ» թերթը հաղորդում է. Ամերիկահայ Առաջնորդ Գեր. Տ. Արշէն Ծ. Վրդ. Վեհու-

նիի հրաւէրով Ազգ. Պաշտ. Միութեան մասնակցող մարմինները և Հ. Յ. Դաշնակցութեան ներկայացուցիչները ի մի հաւաքուելով՝ հոկտ. 21—22-ին Ամերիկեան կառավարութեան կողմից նշանակուած Հայկական Նպաստի օրուան համար կեդրոնական վարիչ մարմին կազմեցին, սեպտ. 26-ի իրիկուան Ուսորի առաջնորդարանը գումարուած ժողովում, ուր ներկայ էին հետևեալ մարմինները հետևեալ ներկայացուցիչներով։

Հայ. Առաք. Եկեղեցի՝ Մաղաք Գ. Պէրպէրեան, Հայ Աւետարանական Եկեղեցի՝ Վեր. Կ. Մ. Մանավեան, Ս. Դ. Հնչ. Կուսակցութիւն՝ Բարսեղ Ռուբինեան, Հայ Յեղ. Դաշնակցութիւն՝ Տոքթ. Ն. Տ. Ս. Թաշճեան, Վեր. Հնչ. Կուսակցութիւն՝ Յովհաննէս Ծովիկեան, Հ. Ս. Ռ. Կուսակցութիւն՝ Սարգիս Մալեէմէզեան, Ազգ. Շահերու Պաշտ. Միութիւն՝ Գարեգին Կիրակոսեան

Այս մարմնոյն անունն է «Հայկական Նպաստօրի Կեդրոնական Յանձնախումբ», որի պաշտօնը պիտի լինի օժանդակել արդէն իսկ Նիւ-Եորքի մէջ գոյութիւն ունեցող Ամերիկեան Հայանպաստ Յանձնախումբին (Armenian relief committee), զանազան Հայ գաղութներում առժամանակեայ օժանդակ մարմիններ կազմակերպելով և նրանց հարկ եղած հրահանգները տալով։

Հայ գաղութներում օժանդակ մարմինները պիտի կազմուին հետևեալ կերպով։

ա.—Կեդրոնական մարմինը կազմաւորող իւրաքանչիւր կազմակերպութիւնից մէյ մէկ ներկայացուցիչ քով քովի գալով կազմում են տեղական օժանդակ մարմինները։ Այն վայրերում, ուր Ազգ. Պաշտ. մասնաճիւղեր գոյութիւն ունին՝ նշանակում են զանազան կազմակերպութեանց ներկայացուցիչներից մէկ մէկ անձ, որոնց վրայ աւելնալով նաև Հ. Յ. Դաշնակցութեան, Հայ Առաք. Եկեղ. և Հայ Աւետարանական Եկեղ. ներկայացուցիչները—եթէ արդէն իսկ այս վերջին երկու կազմակերպութիւնները ներկայացուած չեն Ազգ. Պաշտ. մասնաճիւղերի մէջ—կազմում են տեղական օժանդակ մարմինները։

բ.—Այն վայրերում, ուր Ազգ. Պաշտ. Միութեան մասնաճիւղեր գոյութիւն չունին, գործին նախաձեռնարկ պէտք է լինեն Հայ Եկեղ. մարմինները և կամ Ազգ. Պաշտ. Միութեան մասնակցող կազմակերպութիւններից որևէ մէկը և կամ Հ. Յ. Դաշնակցութեան յանձնաժողովը։

գ.—Իսկ այն ամէն վայրերում, ուր վերոյիշեալ մարմինները գոյութիւն չունին, ռևէ կազմակերպութիւն կրնայ նախաձեռնել օժանդակ մարմնոյն կազմութեան

---

## ԺՈՂՈՎԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՈՒՄ

Լոնդոնից, հոկտ. 7-ից գրում են.—

Ամսիս 1 և 2-ին Մանչէստրում և շրջակայքում «հայկական դրօշակի օրեր» էին։ Հազարաւոր հայ, անգլիացի և բելճիքացի կանայք ծախում էին հայկական դրօշակներ և թերթիկներ ի նպաստ Տաճկահայ փախստականների։ Երեք ոտնաչափ խոշորութեամբ տառերով պատրաստուած էին կոչեր և հրաւէր օգնելու Հայաստանին։ Մամուլը ցոյց տուեց մեծ համակրութիւն։ «Հայկական Կարմիր Խաչի» կոմիտէի նախաձեռնութեամբ օր. Բապինսընի ձեռնարկել է «հայկական դրօշակ»-ի օրեր սարքել [illegible] Մանչէստրում երկու օրուան զուտ հասոյթը եղել է մօտ 15,000 ռուբլի։

Ամերիկայում էլ սկսել են կազմակերպել «հայկական օրեր»։ Նախագահ Ուիլսոն ստորագրել է Ամերիկեան ծերակոյտի և պարլամենտի մէկ որոշումը ամսիս 7 և 8 օրերը «հայկական օրեր» նշանակելու մասին։ Ուրեմն այդ երկու օրերի ընթացքում բովանդակ Ամերիկայում հաւաքուելու է փող ի նպաստ հայ և ասորի փախստականների։ Սպասւում է մեծ արդիւնք։

# Գեղարուեստ

## ՋՈՅԳ ԱՉԵՐԴ

Ջոյգ աչերըդ երկինքներ են, սէրդ ալ այնտեղ գերթ արև
Կը փայփլայ կեանք կը բաշխէ անհունիս մէջ իմ վերև.
Խինդ ու ծիծաղ, զըւարթութիւն յաւերժական գարունի,
Հայու աղջիկ, քո նայուածքըդ լոկ ունի.
Երանի թէ մըրկոտ հոգւոյս
Երանի թէ խաւար հոգւոյս
Երանի թէ մըթին հոգւոյս
Ջոյգ աչերըդ հոսէր մեղմիկ շող ու լոյս։

Ջոյգ աչերըդ որսորդներ են աղջի՛կ անոնց որսն եմ ես.
Հըրապոյրիդ թովքը անոյշ պոկեց սիրտը իմ կուրծքէս.
Ճառագայթող ներկայութիւնդ բաղցր յիշատակդ գեղանի
Յաւերժաբար իմ մտքիս մէջ տեղ ունի.
Երանի թէ քո սէրդ անոյշ
Կամ յիշատակըդ մշտայուշ
Վիշտերս ընէր մոքէս անյուշ
Եւ քո սէրէդ յագենայի քաղցրանոյշ։

Համբոյրիդ եմ ես ծարաւի համեստագեղ հայ աղջիկ
Լի աշխարհներ կըտամ քեզի թէ տաս ինձի մի պաչիկ.
Աչերդ պագնեմ, այտերդ պագնեմ հաշիշ բոյրովդ յագենամ.
Ներշնչումովդ սիրայագուրդ վերանամ.
Երանի թէ այս իմ երազ
Մարմին ա՛նէր երազավազ
Մարմին առնէր երազավազ
Ու գիրկ լանջքիդ վրայ գլուխս հանգչէր հանապազ։

Շրջագգեստիդ շըշիւնն ողորկ, փայլուն, ճերմակ մետաքսէ
Թաղցրահնչիւն մի մեղեդի իմ ականջին կը հիւսէ.
Երեննսեայ ղանգուրներուդ թոյլ ծփանքը ճակտիդ վրայ
Երբ զեփիւռին մեղմ հըպումէն երերայ.
Սիրտը անկեղծ յար կը ցանկայ
Գեղածիծաղ դէմքիդ լուսնկայ
Ու իմ արև հոն կը շողայ
Ջոյգ աչերուդ երկինքին մէջ ըիւրեղեայ։

Ե. Ս. Սահակեան

---

# Գրականութիւն

## ՀՌՉԱԿԱՒՈՐ ԲԱՐԵԳՈՐԾԸ

### I

*«Հայրենասիրական Ընկերութեան» վարչութեան անդամ էր ընտրուած Սերգէյ Արտեմիչը։ Նա առանձին տոկունութեամբ աշխատում էր օգտակար լինել այդ ընկերութեանը թէ խօսքով և թէ գործով։ Ոչ թէ միայն բոլոր նիստերին ներկայ էր լինում, այլև գնում էր ամենքից առաջ և հեռանում ամենքից ուշ։ Նրա այսպիսի պարտաճանաչութիւնն ու ճշտապահութիւնը պաշտօնակիցների նախանձն էր շարժում, նոյն իսկ մտատանջութիւն պատճառում։ Նրանցից իւրաքանչիւրը երկիւղ ունէր, որ գուցէ առաջիկայ ընտրութիւններին ինքը այլ ևս չանցնի, մրցակից ունենալով Սերգէյ Արտեմիչի նման գործունեայ մարդու։*

*Ամբողջ քաղաքի մէջ խօսակցութեան առարկայ էր դարձել այս մարդը, որ յանկարծ իր կեանքի վերջին շրջանին միանգամայն կերպարանափոխուել էր։ Նա՝ որ հռչակուած էր իբրև քարասիրտ ու անգութ մարդ, որ չգիտէր օգնութեան ձեռք կարկառել նեղութեան մէջ գտնուող մերձաւորին և որի համար ոչ մի սրբութիւն գոյութիւն չունէր, անսպասելի կերպով բարեգործի դեր էր ստանձնել։ Թէև միանուագ ոչ մի գումար չէր մտցրել «Հայրենասիրական Ընկերութեան» գանձարանը, սակայն այնպիսի կտակ էր կազմել, որի նմանը լսուած չէր։ Նա իր ամբողջ կարողութիւնը—թէ կանխիկ դրամը և թէ շարժական ու անշարժ կայքերը նուիրաբերում էր «Ընկերութեանը»։ Մի կարողութիւն, որ հասնում էր մօտ երկու միլիոնի։*

*Սերգէյ Արտեմիչը անզաւակ էր։ Նա ունէր կին, որին, ինչպէս ոմանք պնդում էին, սիրում, յարգում էր, սակայն կտակի մէջ ոչ մի խօսք չկար նրա մասին, այնպէս որ այդ կինը ամուսնու մահուան դէպքում մնում էր քաղցած, անտուն ու տկլոր։*

*Բայց Սերգէյ Արտեմիչը խելացի կերպով արդարացնում էր իր կարգադրութիւնը։*

*—Կինս անբուժելի հիւանդութիւն ունի,—ասում էր նա,—ուստի անկասկած ինձանից առաջ է մեռնելու։ Հակառակ դէպքում նա այնքան թանգարժէք իրեր ունի, որ տասնեակ տարիներ կարող է մարդավայել ապրել։*

*Թէև չար լեզուները—ինչպէս միշտ լինում է—բոլորովին հակառակ բաներ էին պատմում, բայց հասարակութեան մեծ մասը հաւատ չէր ընծայում այդպիսի բամբասանքներին։ Այդ չար լեզուները պնդում էին, որ իբր թէ կտակի պատճառով ամուսինները «շուն ու կատու» էին դարձել, որ կինը գիշեր-ցերեկ անիծում էր, «գոբբէգոռ» էր անում և այլն։*

### II

*Մի անգամ Սերգէյ Արտեմիչի տան ամենացած յարկում, որ կիսով չափ գետնի տակ էր, մի ցաւալի դէպք պատահեց։ Այնտեղ ապրող ընտանիքի մայրը ինքնասպանութիւն գործեց։ Թէ ինչ էր այս ողբերգութեան դրդապատճառը,—ոչ ոք հաստատ չըգիտէր։ Միայն յայտնի էր, որ երբ երիտասարդ ամուսինները իրենց երեք հոգի փոքրահասակ մանուկների հետ սեղանի էին նստել ճաշելու, նրանց մէջ ինչ-որ վէճ էր ծագել։ Կինը յարձակուել էր ամուսնու վրայ սուր դանակով սպանելու դիտաւորութեամբ, բայց երբ այդ չէր յաջողուել, դանակը խրել էր իր կուրծքը։*

*Անմիջապէս բարձրացաւ իրարանցում. հաւաքուեցին թէ հարևանները և թէ փողոցով անցնողները, իմաց տուին ոստիկանութեանը, բերեցին շուտափոյթ օգնութեան կառքը։*

*Ինքնասպանի երեխաներից ամենամեծը, որ հազիւ վեց տարեկան էր, գունաթափ ու լեղապատառ դուրս պրծաւ սենեակից ու վազելով դէռ անցաւ բակը, ապա փողոց և անյայտացաւ։ Երբ ձևականութիւնը վերջացաւ, և դիակը պէտք է դնէին կառքի մէջ, երեխան կրկին երևաց։ Նա այս անգամ լուռ արտասւում էր ու հագուստի փէշերով աչքերը սրբում։*

*Երկրորդ երեխան տեսնելով որ իր մօրը վերմակի մէջ փաթաթած դուրս են տանում սենեակից, յուսակտուր ճիչ արձակեց։*

*—Մի լար, Կոկօ ջան,—մօտ վազելով արտասանեց մեծ եղբայրը, որ աշխատում էր խեղդել իր մէջ վիշտը,—վերմակ են տանում, մայրիկը քնեց, տկար է։ Թէև շատ աշխատեց գործադրել իր մանկական խորամանկութիւնը՝ եղբօրը հանգստացնելու համար, սակայն ի զուր։ Վերջինը ոչինչ չէր ուզում լսել, նա բարձրաձայն գոռում էր «մա՛յրիկ, մա՛յրիկ»։*

*Ամենափոքրը մասնակից չէր իր եղբայրների կսկիծին։ Նա մատը ծծելով բերանը ապուշ ապուշ նայում էր բազմութեանը ու կարծես դժգոհութիւն արտայայտում, որ իր վրայ ուշադրութիւն դարձնող չկայ։*

*Երբ դիակը արդէն տարան և բազմութիւնը ցրուեց, ընտանիքի հայրը, որ մի ստորին պաշտօնեայ էր, հոգեպէս տանջուած կուչ էր եկել սենեակի անկիւնում և ճակատը ափերի մէջ առնելով ողբում էր իր դառն վիճակը։*

*—Քրիստոնեայ չէ՞ք,—բացագանչեց դրացիներից մէկը,—օգնեցէք այս թշուառներին։*

*Մի լուացարար և մի կարանող այրի կին սկսեցին խորհել, թէ ինչ կերպ օգնութիւն անեն որբացած երեխաներին։ Նրանք շատ պարզ ձևով վճռեցին հարցը. այսինքն՝ տանեն իրենց տուն մանուկներին և առժամանակ խնամեն մինչև գլուխը կորցրած հայրը ուշքի գայ, կամ մի ուրիշ ելք գտնուի։*

*Այդ վայրկեանին երևաց Սերգէյ Արտեմիչը յօնքերը կիտած ու փրփուրը բերանին։*

*—Այսօր և եթ ազատեցէք բնակարանս, արտասանեց նա այնպիսի շեշտով, որ չի ընդունում ոչ մի հակաճառութիւն։*

*Տիրեց լռութիւն։*

*—Պահանջում եմ, որ այսօր և եթ պէտք է դատարկուի բնակարանս,—կրկնեց նա բարձրացնելով ձայնը և բառերը արտասանելով հատիկ հատիկ։*

*Երեխաները երկուսը կպան հօր ծնկներին, որի գլուխը այնքան բթացել էր, որ ոչ լսում էր և ոչ զգում շուրջը կատարուածը։*

*—Ի՞նչ անաստուածութիւն է, քրիստոնեաներ,—շշնջաց լուացարարը։*

*—Վա՜հ, էս ինչ դայդի մարդ է էլի աղմօրդիք,—ափը ափին զարկելով կամացուկ արտասանեց միրգ ծախող կինտոն, որ այդ միջոցին ներկայ էր։*

*Սերգէյ Արտեմիչը բոլորը լսեց, սակայն խուլ ձևացաւ։ Նա արագաքայլ մօտեցաւ թշուառացած մարդուն ու թափահարելով ուսից, վճռողական կերպով ասեց.*

*—Այսօր դեռ ժամանակ ունիս, գնա՛ բնակարան գտիր… երեկոյեան պէտք է դատարկ լինի տունս. հասկացա՞ր։*

*Երեխաները գունաթափ ու աղերսալի հայեացք էին ձգել տանտիրոջ վրայ, իսկ հայրը գլուխը թափահարելով համաձայնութեան նշան տուեց։*

*—Չեմ ուզում, ախպէր, ոչ ձեր քրէհն եմ ուզում, ոչ դաւիդառաբա,—յետ դառնալով արտասանեց Սերգէյ Արտեմիչը այնպիսի տոնով, կարծես պատրաստ է ահագին զոհողութիւն անել—Իմ տան մէջ մարդասպանութի՜ւն…*

*Նա հեռացաւ գնաց։*

*Բազմութիւնը նորից սկսեց հաւաքուել։ Բոլորեքեան խօսում, դատում էին կատարուած դժբախտ դէպքի շուրջը։*

*—Ուստա Օսէփ,—դիմեց կինտոն իր ծանօթ դուրգարին, որ նոր եկել էր,—արա թէ լաւ ուստա ես, էն դայդի կուբօ (դագաղ) շինի, որ Սերգէյ Արտեմիչին սաղ գայ։*

Դուրգարը խօսողի երեսին դժգոհութեամբ նայեց։

—Ի՞նչ ես աչքերդ չռել,—շարունակեց կինտոն,—ես հանաք չեմ անում։ Շինի Էլի, թէ ուստա ես։ Նա խօ ձեռքին բարձրացնելու պաուղ չէ, ես պիտի գլորելով տանել, ես թռնելով։ Կարմա էն դայդի կուբո շինել։

Այս ասելով վերցրեց նա իր թարախից երեք հատ խնձոր, գլորեց երեխաների կողմը ու հեռացաւ։

III

Սերգէյ Արտեմիչը նոր էր ապաքինուել ծանր հիւանդութիւնից։ Նա նստած էր իր առանձնասենեակում ու խորհում էր։ Մտածում էր վերջին անգամ իր գլխով անցած-դարձած դէպքի մասին և գալիս այն եզրակացութեան, որ վերջապէս ինքն էլ մահկանացու է։ Որոճում էր նոյնպէս հիւանդութեան միջոցին իր ուղեղով անցած մտքերի մասին։ Մտաբերում էր իր կեանքի մէջ տեղի ունեցած մի քանի արկածները, որոնք միմիայն հիւանդութեան ամենածանր րոպէներին անհանգիստ էին արել նրա խիղճը։ Նրանցից մէկը այն էր, որ խարդախութիւններով զրկել էր իր հարազատ եղբօրը և աղքատացրել, որը չդիմանալով վշտին կաթուածահար էր եղել ու մեռել։ Միւսն էլ իր հօր գերեզմանի վրայ թանկարժէք մահարձան կանգնեցնելու հարցն էր։ Վարպետին պայմանաւորուած գնի կէսից էլ պակաս էր վճարել։ Գործը հասել էր դատարանին և ինքը արդար էր ճանաչուել։ Կային և երկրորդական նշանակութիւն ունեցող արկածներ։

Այժմ, երբ կազդուրուել էր, այլ ևս չէին անհանգստացնում նրան այդ մտքերը, նա բացառապէս զբաղուած էր կտակ կազմելու մտքով։ Նա շատ լաւ ըմբռնեց իր ազգականների դիտաւորութիւնը, որոնք պտտւում էին նրա անկողնի շուրջը ու սրտացաւ ձևանում։

Անմիջապէս կտակ կազմելը անչափ կարևոր էր համարում, շատ պարզ ու հասարակ պատճառներով։ Հիւանդութիւնը համոզեց իրան, որ մեռնելը սովորական բան է, այնպէս որ կարող է այնպէս պատահել, որ կանգնած տեղը վայր ընկնի և անշնչանայ։ Այս հանգամանքը հարկադրեց նրան իր ամբողջ հարստութիւնը կտակել «Հայրենասիրական Ընկերութեանը»։

Երբ մեռած կլինեմ,—մտածում էր նա,—ինձ այլ ևս հարկաւոր չի լինելու ոչ մի կոպէկ, հետևապէս պէտք է աշխատել այնպիսի հիմնարկութեան մէջ տեղաւորել սեփական աշխատանքս, որ միշտ յարգանքով յիշուի իմ անունը, որ ես հռչակուեմ մարդասէր, ազգասէր, բարեգործ և այլն, որ թաղուեմ պատուաւոր տեղ փառքով, խուռն ժողովուրդի ներկայութեամբ, որ հռետորները ճառեր խօսեն գերեզմանիս վրայ և ամեն տարի հոգեհանգիստ կատարուի մայր եկեղեցում։

Նա գիտէր օրինակներ, որ հարուստ և անզաւակ մարդիկ այս միջոցին են դիմել՝ մահից յետոյ փառաւոր անուն վաստակելու համար։ Մի կարևոր հարց նոյնպէս որոշեց, այսինքն՝ երբ լիովին կառողջանայ, իր կենդանագիրը (портретъ) նկարել կը տայ բնական մեծութեամբ և կը պահի տանը։ Համոզուած էր, որ այդ կենդանագիրը նրա մահից յետոյ կը կախեն «Հայրենասիրական Ընկերութեան» դահլիճում, ուր յաւիտեան կը մնայ, և որին այցելուները միշտ պատկառանքով կը նայեն ու կօրհնեն։

—

Այս պատմութիւնից յետոյ անցան տասնեակ տարիներ։ Սերգէյ Արտեմիչի ժամանակակիցները անհետացան երկրի երեսից, կեանքի մէջ նկատելի փոփոխութիւն տեղի ունեցաւ, սակայն «Հայրենասիրական Ընկերութիւնը» դարձեալ գոյութիւն ունի։ Այդ հիմնարկութիւնը լիովին ապահովուած է և գործում է լայն չափերով շնորհիւ Սերգէյ Արտեմիչի թողած կտակի։ Մեծադիր կենդանագիրը կախուած է «Ընկերութեան» հոյակապ դահլիճի կենտրոնում, ոսկեզօծ տառերով մակագրուած «Մեծանուն բարերար և հայրենիքի արժանաւոր զաւակ Սերգէյ Արտեմիչ»։

Գ. Բաշինջաղեան

# ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ

## ՈՒՍՈՒՑՉԻ ՊԱՏՄԵԼԸ

Մի ժամանակ հարց ու պատասխանով դաս մշակելու եղանակն այնքան էր տարածուել, որ անկարելի էր խօսք բանալ դասատուի պատմելով դաս տալու մասին։ Ինչպէ՞ս, կասէին հակառակորդները, պատմի ուսուցիչը մի նիւթ, երբ կարող է այդ նոյն աշակերտների օգնութեամբ հարց ու պատասխանի միջոցով մշակել, մի՞թէ կարելի է. չէ՞ որ այդպիսով ցոյց կը տայինք, որ դէմ ենք գնում աշակերտների ինքնագործութիւնն արթնացնելու սկզբունքին։

Ժամանակի ընթացքում պարզուեց, որ ոչ միայն այս, այլ առհասարակ մանկավարժական գործունէութեան մէջ միօրինակութիւն, տափակ միաձևութիւն մտցնել ուզողներն սխալւում են։ Աշակերտների հոգին ու կարիքները բազմազան են, բազմազան են նոյնպէս դասաւանդուող նիւթերը, դասաւանդման նպատակները, այդ պատճառով էլ բնականօրէն բազմազան են լինելու այդ նպատակներին հասնելու միջոցները, ճանապարհները։

Լուռ, խոհուն, սակաւախօս և լսողական տիպի երեխաների համար ուսուցչի ընդարձակ պատմելը երկնային մանանայի արժէք ունի. գեղարուեստական ամբողջութիւն, երևակայութեան պատկերների միութիւն պարունակող նիւթերը, երբ հարց ու պատասխանով են մշակւում, փչանում են բոլորովին, որովհետև քայքայւում, կտրտւում է ամբողջութիւնը և գիտակցութեան մէջ միաձոյլ տրամադրութիւն չի ստեղծւում։

Ուսուցչի պատմելը լարում, հետաքրքրում է աշակերտին, նրա մէջ ստեղծում է մնայուն և զարգացող տրամադրութիւն, զարթեցնում է զգացումներ, զարգացնում լեզուական արտայայտութիւնների պաշարը, վերացնում հարց ու պատասխանով նիւթերը մշակելու մեթոդից յառաջացող միօրինակութիւնը։

Ամեն տեսակ նիւթ չի կարելի պատմել, ինչպէս և ամեն տեսակ նիւթ չի կարելի հարց ու պատասխանի միջոցով մշակել։ Զգացմունքների հարստութեամբ և երևակայութեան կենդանի պատկերացումով աչքի ընկնող նիւթերը պէտք է պատմել. զուտ բանականութիւնը, միտքը զարգացնելու համար կանխապէս որոշուած նիւթերը պէտք է մշակել հարց ու պատասխանի օգնութեամբ*)։

Սակայն դեռ բաւական չէ պատմելու մեթոդին կողմնակից լինելը, ուսուցիչը պէտք է նաև գաղափար ունենայ պատմելու ձևերի և նիւթերի այդ եղանակով մշակելու պահանջների հետ։

Ուսուցիչը դասը պէտք է գ ր ք ի ց ա զ ա տ պ ա տ մ ի, չը նայի գրքի վրայ։ Վերջին դէպքում աշակերտներն այն համոզմանն են գալիս, թէ ուսուցիչը չգիտէ դասը. բացի այդ ուսուցչի պատմածի տպաւորութիւնը աւելի է թուլանում, որովհետև պատմելու ազդեցութիւնը մեծանում է այն դէպքում, երբ ուսուցիչը պատմելիս միշտ էլ նայում է աշակերտներին։

Ուսուցիչը նախօրօք պէտք է մտածած լինի պատմելիք նիւթի ծ ր ա գ ր ի մասին. այդ ծրագրի էջերն իրար յաջորդելու են տրամաբանօրէն և ծրագրի ոգին պէտք է պահպանի դասատուութեան ընթացքում։

Եթէ պատմելիք նիւթը զգացումների և երևակայութեան պատկերների երկու տարբեր ամբողջութիւն չի կազմում, պէտք

*) Այս խնդրի մասին տես «Դասաւանդման խնդիրներ» իմ գիրքը։

է այդպիսի նիւթը պատմուի մ ի ա ն գ ա մ ի ց, ընդհատումը, մաս-մաս պատմելը վնասում է նիւթի ամբողջական ըմբռնմանը, թուլացնում է աշակերտների հետաքրքրութեան ընթացքը և ընդհանուր տպաւորութիւնը թոյլ է լինում։

Պատմող ուսուցչի գործածած լ ե զ ո ւ ն պէտք է մօտ լինի աշակերտների լեզուական կարողութեան բառերի և նախադասութիւնների տեսակէտից, օր. ստորին բաժանմունքում վերացական բառերն ու բարդ նախադասութիւնները միանգամայն անմատչելի են երեխաների հոգեկան կարողութիւններին։

Ոչ միայն բառերն, այլ և լեզուի հ ն չ ի ւ ն ա կ ա ն կողմն ևս պէտք է ուշադրութեան արժանանայ։ Պէտք է խօսել ոչ թէ փըսփսոցով, այլ միջին ուժեղութեամբ, սակայն ձայնը պէտք է աստիճանաբար թուլանայ, մեղմանայ, եթէ կենտրոնացնելու է աշակերտի ուշադրութիւնը կամ նրա մէջ խղճահարութեան զգացմունք է արթնացնելու. տեղ-տեղ էլ ձայնը պէտք է միջին աստիճանից աւելի ուժեղանայ, որպէսզի խօսքին աւելի կշիռ տրուի, որ սթափուեն և աշակերտները։ Ձայնի ուժեղութեան ելևէջներն իրենց մէջ տարբեր զգացմունքներ են պարունակում։

Խօսակցութեան արագութիւնը ևս պէտք է հաշուի առնել. շատ դանդաղ խօսակցութիւնը թմրեցնում է աշակերտներին, շատ արագը՝ նեարդացնում։ Նայած նիւթին, հատուածների առանձնայատկութեան, պատմելու արագութիւնն էլ զանազան ձևակերպումներ է ընդունելու։

Կարճ ասած՝ խօսելու ձևը պէտք է յարմարուի նիւթի առանձնայատկութեանը և խօսելու, պատմելու հնչական կողմի վրայ ուշադրութիւն դարձնելով՝ պէտք է զուտ հոգեկան արժէքների առաջացմանը նպաստել։

Այս բոլորը դեռ բաւական չէ։ Նիւթի մշակման մասին ևս հարկաւոր է մի քանի խօսք ասել։ Պատմելու նիւթի գործողութիւնը պատահում է մ ի ո ր ո շ տ ե ղ. պէտք է այդ տեղը այնպիսի մանրամասնութեամբ նկարագրել, որ աշակերտը դիւրութեամբ կարողանայ որոշ պատկերացում ստեղծել իր երևակայութեան մէջ։

Գ ո ր ծ ո ղ ա ն ձ ե ր ի արտաքինի մասին ևս պէտք է այդպիսի նկարագրեր տալ։

Բայց աւելի մեծ ուշադրութիւն պէտք է դարձնել պատմութեան հ ո գ ե բ ա ն ա կ ա ն կ ո ղ մ ի վրայ։ Աշակերտը իր մէջ պէտք է վերապրի գործող անձերի ապրած վիճակները, մասնակից լինի նրանց ճակատագրին, ուրախանայ և տրտմի նրանց հետ. և եթէ այս բոլորը տեղի չի ունենում, նշանակում է դասը չի հասել իր բուն նպատակին։

Պատմելիք նիւթերը պէտք է հարկաւոր մանրամասնութեամբ, անհատական առանձնայատկութեամբ, պատկերաւոր, գործողութեան որոշակի զարգացմամբ, պատճառական կապերի լուսաբանմամբ բարոյական որոշ վերաբերմունքով պատմուին դասարանում։ Ուսուցիչն ինքը պէտք է ոգևորուի նիւթով, որպէսզի նման ոգևորութիւն առաջացնել կարողանայ երեխաների մէջ։ Միմիայն զգացմունքն է առաջացնում զգացում և ոգևորութիւնը՝ ոգևորութիւն *)։

Գ. Էդիլեան

---

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

Հայոց Դրամատիկ Ընկերութեան խմբի վեցերորդ հերթական ներկայացումը կը կայանայ վաղը՝ երկուշաբթի, նոյեմբերի 7-ին, Արտիստիկ Թատրոնում։ Վ. Փափազեանի ղեկավարութեամբ խաղալու են Մոլիէրի «Դոն Ժուան» կատակերգը։ Դոն Ժուանի դերը կանձնաւորէ Վ. Փափազեանը, իսկ Սգանարելինը՝ Գր. Աւետեանը։ Պատրաստւում են նոր թատերերգեր նոր բեմապատկերներով։

*) Այս ոգով մշակուած դասեր կան «Դասաւանդման խնդիրներ» գրքի մէջ։

---

## ՊՈՍՏ-ԱՐԿՂ

Ս ո ւ լ տ ա, Ա. քհյ Բլրցեանին.— «Համբաւաբեր»ը լոյս տեսած օրուանից առանձին բաժանմունք ունի «Գաւառ»-ին նուիրած, սակայն դժբախտաբար գաւառն մեր ցանկութեան հակառակ սակաւ է օգտւում մեր այս պատրաստակամութիւնից։ Գաւառն ինքը պէտք է ուսումնասիրէ և արտայայտի իւր վիճակը, որին «Համբաւաբերը» սիրով միշտ տեղ է տալիս։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

# Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի Գլխաւոր Կոմիտէի

Նպաստներով հայ փախստական երեխաների համար բացուած և բացուելիք դպրոցների համար հարկաւոր են

## ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐ

(Թիւրքահայ և ռուսահայ)

Դպրոցների գործը ղեկավարելու համար ընտրուած **ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ** որոշելով կազմել ուսուցչական ցանկ, առաջարկում է ցանկացողներին պաշտօնավարել վերոյիշեալ դպրոցներում, փութալ յայտնել Խորհրդին մանրամասն տեղեկութիւններ, թէ որտեղից են, քանի՞ տարեկան են, քանի՞ տարի ուսուցչական պաշտօն են վարել, որ դպրոցումն են աւարտել իրենց ուսումը։ Պէտք է դիմել այս հասցէով՝ «Հայ Գաղթականական Ուսումնարանների Դպրոցական Խորհրդին», Училищному Совѣту школъ для дѣтей бѣженцевъ, Тифлисъ, Абасъ-Абадская, 7.

---

### ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

1917 Թ. **„ԳՈՐԾ"** 1917 Թ.

Գրական, գիտական, հասարակական եւ քաղաքական ամսագրի

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ { Տարեկան . . . . . . . . 15 ր.
Կէս տարուանը . . . . . . 8 ր.

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՐԺԷ 2 ՌՈՒԲԼԻ

Նիւթեր և բաժանորդագին ուղարկել հետեւեալ հասցէով՝

Баку, редакція „ГОРЦЪ", Николаевская, 33.

Առաջին համարը լոյս կը տեսնի դեկտեմբերին մօտաւորապէս հետեւեալ բովանդակութեամբ.

Զաբէլ Եսայեան՝ «Վերջին բաժակը», Յ. Յովհաննիսեան՝ «Ծովափին» (բանաստ.), Յովհ. Թումանեան՝ «Մոծակն ու Մրջիւնը» (բանաստ.), Սոֆոկլէս՝ «Անտիգոնէ» (թարգմ. Տ. Յովհաննիսեանի), Շարլ Բոդլէր՝ «Փոքրիկ արձակ պօէմներ» (թարգմ. Վ. Տէրեանի), Վ. Տէրեան՝ «Երկու սոնէտ» (բանաստ.), Դ. Դէմիրճեան՝ «Հին երգերից» (բանաստ.), Վ. Փափազեան՝ (պատմ.), Ծ. Թորգոմեան՝ «Լաչակս գլխուց ըլլա թող», Յ. Մանանդեան՝ «Ազգութեան գաղափարը», Դ. Անանուն՝ «Փորձութեան ժամին», Անկախ՝ «Յուշեր իմ անցեալից», Ե. քահ. Գեղամեանց՝ «Պետրոս Շանշեան», Ե. Ֆրանգեան՝ «Է. Մախի փիլիսոփայութիւնը», Տ. Խանզադեան՝ «Ռափայէլ Պատկանեանը և իր ընթերցողները»։ Կը լինեն նաև յօդուածներ՝ Լէօի, Ն. Աղբալեանի, Լ. Աթաբէկեանի, Ա. Չիլինգարեանի, Բ. Իշխանեանի, Յ. Լազարեանի, Ա. Մայիլեանի և այլոց։

Խմբագիր՝ Կ. ԿՐԱՍԻԼՆԻԿԵԱՆ
Հրատարակիչ՝ Ս. ՏԷՐ-ՂԱԶԱՐԵԱՆ

3—2

---

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

## կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և դիւանական գրքեր։ Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

---

**Продолжается подписка на**

Первый и единственный по типу ежемѣсячный иллюстрированный журналъ

## „АРМЯНЕ и ВОЙНА"

Посвященный вопросамъ армянской жизни въ связи съ войной.

ЦѢЛЬ ЖУРНАЛА: широкое освѣдомленіе общества съ армянской дѣйствительностью.

Въ журналѣ принимаютъ участіе извѣстные русскіе и армянскіе литераторы и журналисты.

ПОДПИСНАЯ ЦѢНА:

| | | | |
|---|---|---|---|
| За годъ . . . | 3 р. — к. | За 3 мѣсяца . . . . | 75 к. |
| » 1/2 годъ . . . | 1 р. 50 к. | Отдѣльный номеръ . . | 25 к. |

Подписную плату можно присылать марками.

Пробный номеръ высылается за 3 десятикопѣечныя марки.

Адресъ конторы и редакціи: Одесса, Польская ул. № 16.

---

**Продолжается подписка на 1916 годъ**

на еженедѣльный общественно-политическій и литературный журналъ посвященный вопросамъ армянской жизни.

## „Армянскій Вѣстникъ"

(первый годъ)

издаваемый въ Москвѣ Ив. Т. Амировымъ при участіи видныхъ русскихъ и армянскихъ литераторовъ и общественныхъ дѣятелей.

Подписная цѣна

Въ Россіи: на 1 годъ 6 руб., на 6 мѣс. 4 руб. на 3 мѣс. 2 руб. 50 коп., на 1 мѣс. 1 р. 25 коп. За границу вдовое. Цѣна отдѣльнаго номера 20 коп.

Журналъ будетъ выходить по воскресеньямъ. Адресъ редакціи и конторы журнала „Армянскій Вѣстникъ": Москва, Остоженка, 2-й Ильинскій пер., д. 3. кв. 2.

Редакторъ издатель

Иванъ Томасовичъ Амировъ

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Փօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 43

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ“-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Բաշ-գիւղից Ալէքսանդրապոլ փոխադրուած որբ երեխաների ցուցակը*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Ծննդավայրը | Ծնող ունի՞ | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Սինամ Ապիկեան | 14 | Խաչլու | ոչ | ոչ | |
| 2 | Վահան Ասլոյեան | 8 | Թէղէվէրան | մայր | » | Մայր, կրկին ամուս. |
| 3 | Մարտիրոս Աւետիսեան | 8 | Արըվէ | » | » | Որբ. ծառայող |
| 4 | Ագնիւ » | 4 | » | » | » | » » » |
| 5 | Սաթենիկ Բարբարեան | 11 | Կոփ | ոչ | » | |
| 6 | Հայկանոյշ » | 9 | » | » | » | |
| 7 | Սինամ Բարսեղեան | 12 | Բաշ-գիւղ | » | » | |
| 8 | Գալուստ » | 5 | Ավչարա | մայր | » | Մայր, կրկին ամուս. |
| 9 | Սարգիս Գալստեան | 7 | Բաշ-գիւղ | » | » | » Բաշ-գիւղն է |
| 10 | Առաքել Ըսկոյեան | 11 | Բոստաքեանդ | հայր | » | Հայր Կովկաս. |
| 11 | Քիշմիշ Թոդորեան | 12 | Նիւզվէրան | ոչ | » | |
| 12 | Մնացական Թոդորեան | 7 | » | ոչ | » | Ազիքների, հիւանդ. |
| 13 | Ագնիւ Կոպալեան | 8 | Խազըր | » | ոչ | |
| 14 | Եսթեր » | 3 | » | » | » | |
| 15 | Լևոն Յարութիւնեան | 11 | Կլաթ | » | » | Եղբայրը Կովկաս. |
| 16 | Խաչատուր Փինաչեան | 7 | Թօնրաս | » | » | Հայրը անյայտ |
| 17 | Համբարձում Պըլէեան | 8 | Բաշ-գիւղ | » | » | |
| 18 | Սամուն » | 7 | » | » | » | |
| 19 | Սեներքերիմ Կոթոյեան | 11 | Ջէտկան | » | » | |
| 20 | Զարուհի Տէր-Յովհաննիսեան | 11 | Կաղզուան | » | » | 7 տար. քոյր ունի |
| 21 | Նուարդ Համէսեան | 5 | » | » | » | Հօրեղբօր մօտ |
| 22 | Ներսէս Օվակիմեան | 9 | Էրզրում | մայր | այո | Մայրը Փերալո ւ. |

### Սասունից, Մուշից և Տարօնից բերուած Կ. Հ. Բ. Ընկերութեան Ալէքսանդրապոլի որբանոցի որբերի ցուցակը

Կազմուած 1916 թ. յունիսի 10-ին

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Արշակ Ներսէսեան | 12 | Կէլիէկէ | ոչ | ոչ | |
| 2 | Տիգրան Խաչատրեան | 12 | Կուպա | հայր | այո | հայր, Օսմ. զինուոր |
| 3 | Պօղոս Կիրակոսեան | 12 | » | ոչ | » | |
| 4 | Արշակ « | 10 | » | » | ոչ | |
| 5 | Սարգիս Մեսրոպեան | 10 | » | » | այո | |
| 6 | Վահան Պետրոսեան | 9 | » | հայր | ոչ | հայր, Օսմ. զինուոր |
| 7 | Աբետնակ Սղամեան | 12 | » | ոչ | » | |
| 8 | Յակոբ Մկրտչեան | 10 | » | » | » | |
| 9 | Համբարձում Թորոսեան | 7 | » | » | » | |
| 10 | Դաւիթ Պետրոսեան | 9 | » | » | այո | հայր, զինուոր |
| 11 | Ղազար Մարտիրոսեան | 8 | » | հայր | ոչ | հայր, զինուոր |
| 12 | Խոսրով Մարտիրոսեան | 9 | » | » | » | » « |
| 13 | Ազատ Ստեփանեան | 6 | » | ոչ | » | |
| 14 | Թորգոմ Դոնոյեան | 7 | » | » | » | |
| 15 | Իսրայէլ Գասպարեան | 5 | » | » | » | |
| 16 | Կորիւն Վարդանեան | 7 | » | » | » | |
| 17 | Խաչատուր Կիրակոսեան | 6 | » | այո | » | ծնողք Մուշում |
| 18 | Հայրիկ Յարութիւնեան | 5 | » | ոչ | » | |
| 19 | Եղիշէ Աբրէեան | 7 | » | » | » | |
| 20 | Սարգիս Թորոսեան | 8 | » | » | » | |
| 21 | » Աբրահամեան | 7 | » | » | » | |
| 22 | Առաքել Յարութիւնեան | 7 | » | » | » | |
| 23 | Լեւոն Մովսէսեան | 7 | » | հայր | » | հայր Մուշում |
| 24 | Մարգարիտ » | 5 | » | » | » | |
| 25 | Թորգոմ Յովհաննիսեան | 6 | » | ոչ | » | |
| 26 | Խմօ Գասպարեան | 9 | » | » | » | |
| 27 | Մարկոս Մանուկեան | 3 | » | հայր | ոչ | |
| 28 | Սարգիս Մկրտչեան | 6 | » | » | » | հայր Մուշում |
| 29 | Վաղարշակ Երիցեան | 9 | Շէնիկ | ոչ | այո | |
| 30 | Մարտիրոս Մովսէսեան | 5 | » | » | ոչ | |
| 31 | Ազատ Կարապետեան | 5 | » | հայր | » | հայր Մուշում |
| 32 | Ղեւոնդ Յովհաննեսեան | 9 | Շուշնմէր | ոչ | » | |
| 33 | Հմայեակ Շարոյեան | 8 | » | » | » | |
| 34 | Միհրան Կիրակոսեան | 12 | Քոփ | » | այո | |
| 35 | Անուշաւան Գրիգորեան | 10 | Երիցանք | » | ոչ | |
| 36 | Լեւոն Գաբրիէլեան | 10 | » | » | » | |
| 37 | Հմայեակ Յակոբեան | 8 | Գարման | » | » | |
| 38 | Զապէլ Կիրակոսեան | 6 | » | » | » | |
| 39 | Յարութիւն Վարդանեան | 10 | Աղբիկ | » | այո | |
| 40 | Յակոբ Միլոյեան | 12 | » | » | ոչ | |
| 41 | Արշակ Պետրոսեան | 10 | » | » | այո | |
| 42 | Սեդրաք Ստեփանեան | 10 | » | » | ոչ | |
| 43 | Սեդրաք Մուրադեան | 8 | » | ոչ | ոչ | |
| 44 | Գաբրիէլ Խաչատուրեան | 8 | » | » | » | |
| 45 | Թորգոմ Մակարեան | 4 | » | » | » | |
| 46 | Սարգիս Յակոբեան | 9 | Սփհանցոց | » | » | |
| 47 | Տիգրան Յովսէփեան | 8 | » | » | » | |
| 48 | Խաչատուր Կիրակոսեան | 3 | » | » | » | |
| 49 | Լեւոն Մանուկեան | 11 | Տալուորիկ | » | » | |
| 50 | Մելիք Համազասպեան | 9 | » | » | » | |
| 51 | Սամսոն Աւետիսեան | 8 | » | » | այո | |
| 52 | Թադէոս Գէորգեան | 8 | » | » | ոչ | |
| 53 | Պետրոս Սարգսեան | 12 | » | » | այո | |
| 54 | Մարգար Գասպարեան | 9 | » | » | ոչ | |
| 55 | Միսակ Թադէոսեան | 10 | » | հայր | » | հայր Մուշում |
| 56 | Տիգրան Յովհաննիսեան | 10 | Այգեղոն | » | այո | |
| 57 | Մկրտիչ Աբրահամեան | 11 | | ոչ | ոչ | |
| 58 | Մովսէս Մկրտչեան | 12 | Բիրմ | » | այո | |
| 59 | Հաւրէ Մկրտչեան | 4 | Հարքօրք | » | ոչ | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 60 | Գալուստ Մկրտչեան | 8 | Բերմ | ոչ | ոչ | |
| 61 | Յովսէփ Դաւթեան | 10 | » | » | այո | |
| 62 | Գալուստ Մակարեան | 9 | " | » | այո | |
| 63 | Արամ " | 7 | » | " | ոչ | |
| 64 | Սեդրաք Շիրոյեան | 11 | Ջենդաս | » | » | |
| 65 | Նիկողայոս Առաքելեան | 11 | Իշխանձոր | " | » | |
| 66 | Ոնգօ Մանուկեան | 6 | » | » | » | |
| 67 | Յակոբ Յարութիւնեան | 7 | Արդկոնք | հայր | " | |
| 68 | Գիւլէ » | 8 | " | " | » | |
| 69 | Թադէոս Ստեփանեան | 12 | » | ոչ | » | |
| 70 | Խմիկ Թադէոսեան | 7 | " | " | » | |
| 71 | Հմայեակ Պօղոսեան | 6 | Դելիկեծման | " | » | |
| 72 | Արամ Պետոյեան | 8 | Հարսթիք | " | " | |
| 73 | Մուշեղ Միսաքեան | 5 | " | » | » | |
| 74 | Խնիկ Պետոյեան | 5 | " | » | » | |
| 75 | Յակոբ Պետոյեան | 5 | » | ոչ | ոչ | |
| 76 | Խաթուն Ղազարեան | 4 | » | » | » | |
| 77 | Արուսէն Յովհաննէսեան | 7 | Սիմալ | » | » | |
| 78 | Զմրուխտ Գէորգեան | 9 | Մուշ | մայր | » | մայր Ալէքս-պոլ է |
| 79 | Մուշեղ Ղարիպեան | 14 | " | » | այո | |
| 80 | « Սիմէօնեան | 7 | Բաղէշ | հայր | ոչ | հայր Մուշում |
| 81 | Գիւլէ Երանոսեան | 6 | Խնուս | ոչ | » | |
| 82 | Ֆալակօ » | 4 | " | » | " | |
| 83 | Արշակ Անտոնեան | 4 | Օղնուտ | » | » | |
| 84 | Ղուկաս Նազարեան | 12 | Խութ | » | " | |
| 85 | Սահակ Կօկոյեան | 9 | Ղարապապա | » | » | |
| 86 | Ղարիպ Ասոյեան | 7 | Հացիպ | » | " | |
| 87 | Համբարձում Մանուկեան | 10 | Խնուս | » | » | |
| 88 | Արեքնազան Վարդանեան | 5 | » | » | » | |
| 89 | Ազնիւ Ասոյեան | 4 | " | » | " | |
| 90 | Աղաւնի Ղազարեան | 6 | Օրգնոց | » | » | |
| 91 | Մարգարիտ Դաւթեան | 5 | Գիւնդմէր | ոչ | ոչ | |
| 92 | Արեգ Գէորգեան | 6 | Ղարաքեօփ | » | » | |
| 93 | Սահակ Գրիգորեան | 4 | Արդերդ | » | » | |
| 94 | Սամսոն » | 3 | » | » | » | |
| 95 | Աբեթ Պետրոսեան | 14 | Շէյխլան | » | « | |
| 96 | Պօղոս « | 12 | » | » | այո | |
| 97 | Միքայէլ Այվազեան | 10 | » | » | » | |
| 98 | Յարութիւն Կարապետեան | 12 | Հասան | » | » | |
| 99 | Խորէն Խաչատուրեան | 15 | " | » | » | |
| 100 | Ազնիւ Համբարձումեան | 3 | " | » | ոչ | |
| 101 | Շմաւոն Մատթէոսեան | 9 | Ազբէկ | մայր | » | |
| 102 | Զաքար Մանուկեան | 9 | Վաղկան | ոչ | » | |
| 103 | Վաղարշակ Ղուկասեան | 8 | Կոմս | » | » | |
| 104 | Երանոս Գաբրիէլեան | 7 | Սուլուխ | » | » | |
| 105 | Մուշեղ Մանուկեան | 7 | Խարս | » | այո | |
| 106 | Առուսեակ Առաքելեան | 7 | Սուլուխ | » | ոչ | |
| 107 | Ծովիկ Հայրոյեան | 7 | Խասգիւղ | ոչ | » | |
| 108 | Ալմաստ Վարդանեան | 11 | Շերվանշէխ | " | » | |
| 109 | Սարգիս Աստուրեան | 12 | Նոր Սանջաղ | » | " | |
| 110 | Արմենակ Յովհաննիսեան | 6 | Ծղակ | » | » | |
| 111 | Մարիամ Յակոբեան | 7 | Խնուս | » | » | |
| 112 | Մուշեղ Մանուկեան | 9 | » | » | » | |
| 113 | Զաքար " | 9 | Մուշ | » | » | |
| 114 | Քրիստափոր Զաքարեան | 6 | Հնդիքար | » | » | |
| 115 | Անդրանիկ Վարդանեան | 9 | Թէրջան | մայր | " | մայրը անյայտ |
| 116 | Համբարձում Ղուկասեան | 8 | Փսան | ոչ | » | |
| 117 | Ռուբէն Պետրոսեան | 8 | Աւրա | " | " | |
| 118 | Ազատ Մանուկեան | 6 | Շէնիկ | " | " | |

## Ղազախի շրջանի Քարվանսարայի որբերի անուանացուցակը

Կազմուած 1916 Թ. մայիսի 1-ին

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Եղիազարեան Յարութիւն | Բիթլիս-Սև-քար | 13 | այո | ոչ | — |
| 2 | Սիմոնեան Եղիազար | Վան-Պստի գիւղ | 13 | » | ,, | — |
| 3 | „ Մաքրուհի | „ » „ | 11 | » | ,, | — |
| 4 | Մուրադեան Գաբրիէլ | Բիթլիս „ „ | 14 | ,, | ,, | — |
| 5 | Մատթէոսեան Գէորգ | » Սև-քար | 12 | ,, | մայր | Քարվանսարա |
| 6 | Շահինեան Սերոբ | „ Սև-քար | 13 | ,, | հայր | Վան է գնացել |
| 7 | Գասպարեան Սահակ | Վան-Սինդ գիւղ | 15 | ,, | ոչ | — |
| 8 | » Յովհաննէս | „ » » | 9 | ,, | ,, | — |
| 9 | Կարոյեան Արշակ | » Խաչան | 12 | ,, | ,, | — |
| 10 | Նշանեան Ասատուր | » Մխկներ | 4 | ոչ | ,, | — |
| 11 | Գասպարեան Բաղդասար | » Բերդակ | 7 | այո | հայր | Սև-քար (Ղազախ) |
| 12 | » Աւետիս | » „ | 11 | ,, | ,, | » „ |
| 13 | „ Բենիամին | » » | 4 | ոչ | ,, | „ » |
| 14 | Կարապետեան Գեղամ | » Կուռուպաշ | 9 | ,, | մայր | » „ |
| 15 | » Մաքրուհի | » » | 6 | ,, | ,, | Ղազախ քաղաք |
| 16 | Սեդրաքեան Սարգիս | » Մխկներ | 14 | այո | հայր | » » |
| 17 | Ղազարեան Միհրան | „ » | 12 | ,, | մայր | Քարվանսարա |
| 18 | Ասատուրեան Ռուբէն | » Բարկաթ | 15 | ,, | ,, | — |
| 19 | Խէրոյեան Միսակ | » Աշըշատ | 10 | „ | — | — |
| 20 | Աւետիսեան Յովհաննէս | « Նարեկ | 8 | » | ոչ | — |
| 21 | Մաթոսեան » | » Շատախ | 10 | „ | ,, | — |
| 22 | Գնոյեան Վարոս | Մշոյ.Նորադին | 8 | ոչ | ,, | — |
| 23 | Յովհաննիսեան Նշան | Վան Նոր գիւղ | 8 | այո | ,, | — |
| 24 | Վարդանեան Հայրիկ | » Արճակ | 7 | ոչ | ,, | — |
| 25 | „ Ազատուհի | „ » | 9 | » | ,, | — |
| 26 | Պետրոսեան Աւետիս | « Շատախ | 8 | » | ,, | |
| 27 | Մկրտչեան Համբարձում | Ս. Էջմիածին | 9 | այո | հայր մայր | |
| 28 | Համբարձումեան Սերոբ | Վան-Քոէլ | 7 | „ | ոչ | Էջմիածին |
| 29 | „ Քերոբ | » » | 5 | ոչ | ,, | |
| 30 | Ռուբէնեան Գուրգէն | Վան | 8 | » | — | |
| 31 | Գալստեան Մուշեղ | Վ. Թացվան | 7 | » | հայր | |
| 32 | Մարգարեան Նշան | » Սոթքէ | 7 | » | հայր | Էջմիածին |
| 33 | Մարտիրոսեան Յակոբ | Պուլանըղ-Կոփ | 7 | » | մայր | Կ.-Պոլիս |
| 34 | Ղազարեան Զաքար | Արճակ | 5 | » | ,, | Ալէքսանդրապոլ |
| 35 | Սարգսեան Սերգէ | | 6 | „ | ,, | |
| 36 | Տիգրանեան Մխիթար | | 4 | „ | ,, | |
| 37 | Դաւոյեան Թէմուր | Լօրդգա | 10 | այո | ,, | |
| 38 | Պետրոսեան Արմենակ | Նարեկ | 12 | „ | մայր | |
| 39 | Յակոբեան Կիրակոս | Նորդուզ | 10 | « | ոչ | Սև-Քար (Ղազախ) |
| 40 | Ստեփանեան Վաղինակ | Պուլանըղ Լիզ | 7 | ոչ | ,, | |
| 41 | Խոսրիկեան Սեդրաք | | 7 | » | ,, | |
| 42 | Մուրադեան Մկրտիչ | Խաչան | 6 | „ | ,, | |
| 43 | » Մարիամ | » | 12 | » | ,, | |
| 44 | » Բասեն | » | 9 | » | ,, | |
| 45 | Մինասեան Դաւիթ | Խիզան | 6 | „ | ,, | |
| 46 | Ծաղոյեան Գրիգոր | Խարիթ | 8 | » | ,, | |
| 47 | Յովհաննիսեան Մուշեղ | Սիփան | 8 | „ | ,, | |
| 48 | Սերոբեան Աւագ | Ծափառ | 8 | « | ,, | |
| 49 | Անթանազեան Սարգիս | Խարիթ | 7 | „ | ,, | |
| 50 | Տիգրանեան Առաքել | Կուռուպաշ | 11 | այո | ,, | |
| 51 | Յովհաննիսեան Մանուկ | Մաշտակ | 10 | » | մայր | Էջմիածին |
| 52 | Պետրոսեան Յակոբ | Դշեղ | 7 | ոչ | ոչ | |
| 53 | Յակոբեան Մկրտիչ | » | 6 | » | ,, | |
| 54 | Խաչիկեան Վարազդատ | Վան | 7 | „ | ,, | |
| 55 | Մեսրոպեան Վազգէն | Փարխնդու | 8 | » | ,, | |
| 56 | Թադէոսեան Միհրան | Շամշադին | 10 | այո | հայր մայր | Տեղը չգիտէ |
| 57 | Ամիրեան Պարգև | Բիթլիս | 10 | » | ոչ | |